# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ

# ՍՐԲՈՑՆ ՍԱՐԳՍԻ

# ԶՕՐԱՎԱՐԻ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ

Ի ՆԵՐՍԻՍԷ

ՇՆՈՐՀԱԼՒՈՅ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի Տպարանի Մխիթարեանց

ՌՅԳ — 1854

# ԹՈՒՂԹ

ԱՌ Ի ՆԵՐՍԻՍԷ ԵՊԻՍԿՈՊՈՍԷ

ՅԵՂԲՕՐԷ ՏԵԱՌՆ

ԳՐԻԳՈՐԻՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ՀԱՅՈՑ

ՊԱՏԱՍԽԱՆԻ ԹՂԹՈՅՆ

ԳԵՈՐԳԵԱՅ

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԱՌԱՋՆՈՐԴԻ

ՍՐԲՈՅ ՈՒԽՏԻՆ ՀԱՂԲԱՏԻ

ՅԱՂԱԳՍ ՀԵՏԱԶՕՏԵԼՈՅ

ԱՌ Ի ՍՏՈՒԳՈՒԹԻՒՆ

ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆՍ

ԵՐԱՆԵԼՒՈՅ

ՆԱՀԱՏԱԿԻՆ ՍԱՐԳՍԻ




ՈՐՈՑ բաղձալի է ճշմարտութիւնն յիրս և 'ի բանս, նոցունց և յաւէտ ըղձալի խնդրելոյն զնա փոյթ, իբրև ական պատուականի և գեղեցիկ մարգարտի ըստ իմաստնոյ վաճառականին. որոյ աղագաւ ոչ ինչ անխայեն յանհասանելեացն հասումն. կամ 'ի յանձին տածանումն, կամ 'ի նիւթականաց գոյից ծախումն. այլ զոսկեհանացն բերելով զնմանութիւն՝ երկրորդ ըղբովանդակ աշխատութիւնս առ սէր և յոյս վարկանին փարթամութեանն: Ըստ այսր ապացուցի և զքոյդ տեսանեմք պարզական մտաց լուսաւորութիւն, խոհական մասին փափաքող, և համաստեղից նորին, որով բանականիս զարդարին մասունք. որ և յոգնաբեղուն պտղոցն քաղցրագունից առ բարւոյդ ծառոյդ ամբարումն 'ի միոյ տասի ծածջ.

նուցաւ պտղոյ ճաշակմանն է ։ Քանզի հոգեւորական այս խնդիր բարեյաղթ վկային Քրիստոսի սրբոյն Սարգսի , անճառ պատմութեանն քննութիւն առ 'ի գիւտ ճշմարտութեան , որ 'ի նախնեացն հարց անտես եղեալ մինչեւ ցմեզ , 'ի քէն միայնոյ շարժեցաւ զմերս զարթուցանել թմբրութիւն 'ի գիւտ այնր խնդրոյ ։ Վասն որոյ և մեք ըստ նշանակութեանն առ 'ի ձէնջ տուեցելոց գրով , զոր և ծանուցաւ ձեզ երբեմն յաղօթական եղբօրն զրուցատրութեննէ առաքեցաք առ եղբարս գերահռչակ ուխտին որ յանուն սրբոյ միայնական ճգնաւորին Մօր Պարսամոյի 1 , առ սահմանաւն Մելիտինոյ Հայոց . որպէս զի յարկեղս մատենից իւրեանց հետազօտեալ քննեսցեն , և եթէ գտցի նշանակեալն , թարգմանեալ տայցեն մեզ զխնդրելին ։ Որոց յօժարական սըրտիւ զառ 'ի մէնջ ընկալեալ խնդրոյ փոյթ , պատասխանեցին .մերոցն զայս ինչ , եթէ վասն զի առ մեզ համանման վկայք՝ չորք են կոչեցեալք

Սարգիս, ընկերն Թադէոսի՝ որ յՌուծայի նահատակեցաւ. և այլ անձն որ յԱմիթ, և միւս եւս 'ի Տարայ՝ ուր հնոցն է երից մանկանցն, և զօրավարն Սարգիս հանդերձ որդւովն 'ի Գարու վկայեալ. արդ զորո՞ն արգելուք 'ի չորեցունց յայսցանէ խնդրէք տուեալ զպատմութիւն։ Եւ մեզ թէպէտ և այլքն բայց ըն-կերէն Թադէոսի անծանօթ էին, սակայն ելաք մեք ինչ տեսանելով, եթէ զոր խնդրեմքն՝ ոչ այլ ոք է 'ի սոցունց, բայց զօրավարն անուն՝ որոյ և որդին. վասն որոյ գրեալ առ նոսա կրկին անգամ, զնորայն յանուանէ խնդրեցաք թարգմանել զվկայութիւն. և նոցա ընկալեալ զաս 'ի մէնջն ցուցեալ անուն, և թարգմանեալ՝ որքան էր կարողութիւն, Ջերմեռանդն սիրով 'ի ձեռն որուամն խմաստնոյ 'ի նոցանէ Միքայէլ անուն, աղօտաբար զմեր գիտողի դպրութիւն՝ առաքեցին առ մեզ. որ թէպէտ և 'ի յօրմարութիւնս բանից և 'ի շաղկապս բառից ոչ զուգլեալ ըստ մերումս լեզուոյ,

սակայն զբնութիւն բանին և զկարգ-
պատմութեանն ամբողջ ունէր յին-
քեան ։ Զոր և մեր ընկալեալ, և
ըստ չափոյ զօրութեան յղկեալ ըղ-
գուրս բանիցն և զպատմողականն՝
առաքեցաք ձեզ և հանուրց եկեղե-
ցեաց Հայաստանեաց՝ գանձ երկ-
նային և հոգեւոր, որ ծածկեալ էր
յայլալեզու ագարակի աղանց . և
այժմ յայտնեցաւ շնորհօքն Քրիս-
տոսի 'ի ձեռն քոյին խնդրոյ պա-
տուականդ 'ի գլուխս եկեղեցւոյ
Գէորգէոս ։ Զոր և քո առեալ սեր-
մանեսցես որպէս զբանն սերմանող
բանին ընդ ամենայն տեղիս, որք
կարգան զանուն տեառն, և կա-
տարեն հանդիսաւոր տօնախմբու-
թեամբ զյիշատակ սրբոյ վկային ։
Որովք ազատեսցին միտք իմաստուն
լսողաց 'ի տարբերական կրից թե-
րակատար այնր պատմութեան .
յորմէ ոչ ժամանակ, և ոչ տեղի, և
ոչ թագաւոր, և ոչ թէ յորմէ ազ-
գէ, և կամ ուստի և յինչ պատ-
ճառէ յայտքան եկն յառաջագի-
մութիւն, մինչ զի տարեւոր պա-

տուեալ զնա տմնիւք և ժողովովք , ծանուցեալ լինի ։ Նա և որք հակառակաբարն բերին Ցոյնք և Վիրք ընդ վկայիս Աստուծոյ , և ընդ մեզ առաքելականս իմն յօդեալ վասն սորին բաջաղանս , 'ի ստուգելն զի-րին ճշմարտութիւն , թէ ով արդեւք սա իցէ , զգջասցին , կամ ըմբերանեսցին ։ Եւ մեզ յաղագս յայտնութեան ճշմարտագունի պատմութեանս փութոյ և երկոց վարձ փոխարինի 'ի ձէնջ և յամենեցունց այս տացի , թողութիւն մեղաց 'ի յիշատակի երանեալ վըկայիս հայցել վասն մեր 'ի տեառնէ . զնոյն ինքն՝ վասն որոյ բանս է , բարեխօս ունել ընդ մերոյ փըրկութեան ։ Եւ արդ սկսցուք 'ի կարգ պատմութեանն , զոր ընկալաք գըրով 'ի նախասացեալ սրբոյ ուխտէն սպասաւորաց , որ է այսպէս ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՑՆ ՍԱՐԳՍԻ

# ԶՕՐԱՎԱՐԻ

# ԵՒ ՈՐԴԻՈՅ ՆՈՐԱ

## ՈՐՈՅ ԱՆՈՒՆ ԿՈՉԻ

# ՄԱՐՏԻՐՈՍ

Ի ԺԱՄԱՆԱԿՍ թագաւորու-թեանն Հռոմայեցւոց մեծին Կոս-տանդիանոսի՝ որ ըստ բնաւորական բարեսէր կամացն, և ըստ երկնային կոչմանն 'ի վերուստ, այն ինչ նոր-ընծայ ընկալաւ 'ի թագաւորս ըզ-բարեպաշտութիւն հաւատոյ, և զկրօնս քրիստոնէութեանն, որով մեհեանք զիւաձոյլ պատկերաց տա-պալեալ քակէին, և եկեղեցիք Քրիստոսի պայծառացեալ լուսա-ւորէին յամենայն տեղիս. և խաւար

հեթանոսական կռամոլութեան
հալածական լինէր , և մանկունք
Նոր Սիոնի փառազարդեալ շքե-
ղանային 'ի հանդերձս ոսկեհուռն
պսակեալ և պաճուճեալ . յայնմ
ժամանակի ծագէր իբրև զաստղ
լուսապայծառ յաշխարհին Կապ-
պադովկեցւոց բարեպաշտութեան
հաւատով այր ոմն զարմանալի և
հռչակաւոր , որոյ Սարգիս անուն
ճանաչիւր . որ արքունական հրա-
մանաւ էր կարգեալ 'ի զինուորու-
թիւն ընդ զօրս Թագաւորին որք 'ի
Կապպադովկիա , գերագոյն գոլով
քան զյոգունս 'ի համադասից զի-
նուորակցացն յարիական մրցմունս 2
որ 'ի պատերազմունս բարբարո-
սաց . մինչ զի և համբաւ քաջու-
թեան նորա , որով զհակառակացն
մղէր մարտակռուութիւն 3 , հա-
սանէր միշտ 'ի լսելիս մեծի Թագա-
ւորին . ուստի և ընդ պարգևաց
մեծագունից և պատիւ ստրատելա-
տութեան առաքէր նմա , և պա-
տուական 'ի մէջ համապատիւ իշ-
խանացն և դատաւորաց կողմանցն

այնոցիկ լինել հրամայէր . և եղեալ նորա այնքան մեծապատիւ՝ մինչեւ անուանել նմա բոլորից պատուասիրաբար , և հպատակել ամենայն խոնարհութեամբ . և ոչ ոք ընդդիմակաց գտանէր առ 'ի նմանէ եղելոցն և հրամայելոցն :

Իսկ սքանչելի այրն Աստուծոյ իբրեւ ընկալաւ յարքունական հրամանացն զդերապատիւն այն իշխանութիւն , ոչ 'ի նիւթական շահավաճառութիւնս 'ի կէր արկանէր զայն և 'ի փառս , այլ 'ի հոգեւորս և յաստուածայինս : Քանզի շրջէր ընդ քաղաքս և ընդ գաւառս այնր նահանգաց , և սրբէր զաշխարհն 'ի կռոցն մոլորութենէ , խափանելով զզոհս ձենձերալից ուրուական պատկերացն անօտեաց . զի դեռ եւս զօրանայր առ բազում խաբէութիւն կռապաշտութեանն . ըստ որում զոմանս բանիւ վարդապետութեան ձգէր յուսականս առաքելականս աւետարանին Քրիստոսի Հոգւոյն իմաստութեամբ . նա և հմուտ գոլով 'ի մանկութենէ

Հին և Նոր կտակարանաց 4, և զո-
մանս սպառնալեօք հաւանեցուցա-
նէր թողուլ զմոլորութիւն և գալ
առ Ճշմարտութիւնն. և զայլս՝ ո-
րոց սիրելի էր խաւարն անգիտու-
թեան, և ատելի լոյսն աստուած-
գիտութեան, հալածականս գա-
նիւք և տանջանօք առնէր 'ի հայրե-
նի գաւառաց. և զբագինս կռոցն
քակէր 'ի հիմանց, և փոխանակ շի-
նէր եկեղեցիս Աստուծոյ, և մատ-
րունս նախ եղելոց վկայիցն. որովք
լինէր խնդութիւն աստուածապաշ-
տից, և սուգ տրտմութեան հակա-
ռակորդացն դասուց: Եւ ինքն առ-
ինքեան երանելին ուրախ լինէր ընդ
փառաւորութիւնն Քրիստոսի նո-
վաւ, և ընդ կործանումն սատա-
նայի. և այսպիսի բարեսնունդ քա-
ղաքավարութեամբ ըստ պատուի-
րանացն Աստուծոյ կալով սրբոյն
ամս բազումս սրբութեամբ և ար-
դարութեամբ և բաւանդակ առա-
քինութեանցն մասամբք:

Բարիատեաց և մարդախոշոշ
բանսարկուն նախանձաբեկ լինէր 'ի

տեսանել յայնպիսի հանդէս բարեպաշտութեան զերանելին, և ջանայր խափանել զնա յառաջին եդեալ ճանապարհաց վերնոյ քաղաքին Երուսաղէմի 'ի ձեռն զանազան փորձութեանց. սակայն ոչ զօրէր որքան սիւնքն հաւատոյ կայսրն Կոստանդիանոս հանդերձ որդւովքն կենդանի էին յաշխարհի. զի ամրածածուկ աջովն Աստուծոյ պարսպեալ լինէր, և բարձրանայր օր ըստ օրէ արքունական մեծամեծ ձրիւք պայծառացեալ փառաց 'ի փառս: Մինչեւ ըստ յաճախելոյ մեղաց մերոց, յետ երկնային խաղաղութեանն եկեղեցւոյ որ յաւուրց անտի Կոստանդեայ մեծի և որդւոցն, նստէր յանցաւորն Յուլիանոս կոչեցեալն Պառաւատոս 5 յաթոռ թագաւորութեն նոցա. որ երբեւ զկայծակն ինչ պարածածկեալ ընդ յարդիւ թաքուցեալ ունէր զկռոցն մոլորութիւն, և 'ի դիպող ժամու իւրոյ չարութեանն զկնի բարեպաշտ թագաւորացն վախճանի՝ վառեալ հրդեհեաց զորս ընդ տիեզերս զաստուածեղէն կրօնիցն

պաշտօնեայս . և մնացեալքն 'ի հե-
թանոսաց մոլորելոցն 'ի կուռս ան-
դի գտեալ յառնէին 'ի վերայ հաւա-
տացելոցն 'ի Քրիստոս . աւերէին
զեկեղեցիս և հալածէին զպաշտօ-
նեայս . և շինէին դարձեալ հրամա-
նաւ ուրացողին զաւերեալ մեհեանս
դիցն . և զբազումս 'ի քրիստոնէից
յեկեղեցականաց և 'ի զինուորաց
և 'ի ռամկաց պէսպէս չարչարանօք
տանջեալ սպանանէին յաղագս ճըշ-
մարտութեան հաւատոցն . և ոմանք
խոյս տուեալ փախչէին յահէ անօ-
րինացն , տարաշխարհիկ 'ի հայրենի
գաւառացն լինելով :

Իսկ երանելւոյն Սարգսի իբրեւ
զայս ամենայն տեսանէր եղեալ ,
մտախոհ լինէր առ ինքեան եթէ
զինչ կամք են Աստուծոյ՝ արասցէ ,
հայցէր պաղատանօք . և ահա երե-
ւեալ նմա Յիսուս 'ի տեսլեանն ա-
սէր . ժամ է քեզ , ով Սարգիս , ե-
լանել յաշխարհէ քումմէ և յազգէ
քում նահապետին Աբրահամու . և
գնալ յաշխարհ զոր ցուցից քեզ .
յորում պատրաստեալ է քեզ ան-

դանօք առնուլ զպսակն արդարութեան ։

Յայնմ ժամանակի համբաւ իմն հռչակեալ լինէր, եթէ հանդերձեալ է Յուլիանոս արքայ ելանել յարեւելս, և ընթանալ պատերազմական օրինօք 'ի Պարս. քանզի կախարդասար աղանդիւն հեթանոսաց պատրեալ՝ որք զճակատագիրն ասէին, ունել նմա զԱղեքսանդրի մակեդոնացւոյ, տիրել հանգոյն նմին հանուրց թագաւորութեանց աշխարհի ։

Իսկ իբրեւ լուաւ բարեպաշտ զօրավարն Սարգիս զյարուցմունս հեղեղացն բռնութեան որ հանդերձեալ էր հարկանել զիմաստութեան տուն զեկեղեցի, զոր 'ի վերայ վիմի հաւատոյ շինեալ, կամեցաւ գործով զհրամանն տէրունական կատարել. քանզի ծանեաւ թէ այս է ժամանակն որ ցուցաւ նմա 'ի աւետարանին՝ հալածիլ վասն արդարութեան, որով և երանելի լինել ։ Թողոյր ապա զհայրենին ժառանգութիւն, զիշխանական ձա-

խութիւնն , զերեւելի զփառսն , և զյոգնախումբ զօրացն զպետութիւն , զառ 'ի մեծամեծացն համագաստութիւն , զմննդակցացն զընդաբոյս սիրոյ զուարճութիւն . և բովանդակ իսկ ասել , զպատճառս կենաց բարիոք նիւթականիս այս մարմնոյ , և ըստ սիրելական 6 հրամանին որ առ մեծատունն , վաճառեալ զստացելոց գոյից բազմութիւն՝ բաշխէր կարօտելոց , և թեթեւանայր ինքն 'ի հոգոց յոքնավրդով հիւթից ծանրութենէ . և փոխանակ ծանունցն և վայրաքերաց՝ զխաչն Քրիստոսի բարձեալ , հետեւիւր նախընթաց կարապետի այնր Ճանապարհի :

Այնոյր ճանապարհակից զՄարտիւրոս անուն որդի իւր , որ ոչ էր նուազ բարի արգասեօք մարմնոյն արութեամբ և հոգւոյն առաքինութեամբ յաջնուականութենէ հայրենի բարետոհմութեանց . և նախ աղօթիւք առ Ճանապարհն ճշմարտութեան պատրաստէին , և զայս յաղօթելն իւրեանց ասէին . Աստուած

բոլորից և տէր ամենայնի, յորմէ գոյացան արարածք, և նախախնամին զօրութեամբ քով. որ քաղցր ես առ ամենեսեան, և գթած առ երկիւղածս 'ի քէն, որ եղեր ողորմութեամբ քոյով ընդ արդարսն առաջինս, և փրկեցեր յիւրաքանչիւր փորձութեանց զնոսա, դու նոյն տէր 'ի սկզբանէ մինչև ցայժմ և յամենայն յաւիտեանս: Վասն որոյ անկեալ առաջի քո հալածեալքս վասն անուանդ քում սրբոյ, հայցեմք 'ի քէն լեր կցորդ ճանապարհիս մերոյ յոր հանդերձեալ եմք ընթանալ, որպէս որոց նախ քան զմեզ սրբոց քոց, մինչև հաստատեսցես 'ի մի յօթևանացդ արդարոց. մո՛յծ զմեզ 'ի տուն Հօր քո երկնաւորի. և քեզ փառք ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ յաւիտեանս. ամէն:

Ապա այնուհետև յուղի անկեալ գնային տարադէմ յաշխարհն Հայաստանեայց, առ որ յայնժամ ունէր զաթոռ թագաւորութեան Հայոց մեծաց Տիրան անուն, որդի Խոսրովու, որդւոյ Տրդատայ մեծի

նալ Թագաւորին Շապուհ անուն։ Եւ այս գործիւր ոչ վայրապար, այլ զի ձգէր զնա անօրէնութիւնն Սատանայ տեսչեանն 'ի նշանակեալն տեղի, յորում հանդերձեալ էր պատկերել վկայութեանն 'ի Քրիստոս։

Եւ եղեալ վկայութեանն յաշխարհէն Հայոց հանդերձ որդւովն իւրով, և հասեալ 'ի Պարս յանդիման լինէր Թագաւորին. զոր տեսեալ Շապհոյ ուրախ եղեւ յոյժ, մանաւանդ խրախու լուաւ զհամբաւ քաջութեան նորա, և զհատուածի պատերազմաց եղանելոյն 'ի Հռովմոց. և ընկալեալ մեծապատուիւ վառօք, ընդ առաջին զօրավարացն Պարսից կարգէր զնա, զունդս բազումս տուեալ 'ի ձեռս նորա, և յամենայն պատերազմունս առ որս առաքեալ լինէր յաջողէր նմա Աստուած. որով լինէր սիրեցեալ յաչս Թագաւորին և մեծամեծաց նորա։ Իսկ երանելւոյն ոչ անձին զօրութեան այլ Աստուծոյ տալով զյաղթութեան կատարումն. վասն որոյ ոչ երբէք նուաղեցուցա-

ներ զհոգեւորացն ընծայաբերութիւն . այլ յարաժամ մատուցանէր զգոհութեան և զփառաբանութեան պատարագս առաջի Աստուծոյ, ոչ միայն զանձին իւրոյ մաքրութիւն բանաւոր պատարագաւ . այլ և զանբանից կենդանեաց զենմունս բաշխելով 'ի պէտս աղքատաց և կարօտելոց , ըստ սովորութեան իւրում 'ի նախնեաց անտի . զոյն և ուսուցանէր ամենեցուն անհուազ կատարել զզենմունս անասնոց 'ի Նուէրս Աստուծոյ , յաղագս կերակրելոյ ողորմութեամբ զքաղցեալս և զկարօտեալս Դ :

Յայնմ ժամանակի լուր եհաս եթէ զօրքն Հոռոմոց որ ընդ Յուլիանոսիւ , աւերեն ասպատակաւ զաշխարհն Տաճկաց որ ընդ սահմանաւ թագաւորութեանն Պարսկոյ . և հաճոյ թուեցաւ արքային առաքել զսուրբն Սարգիս 'ի պահպանութիւն կողմանցն Տաճկաստանի , որ էր սահմանակից աշխարհին Հոռոմոց . և սորոյն առեալ ընդդունդս զօրաց իւրոց հասանէր 'ի

տեղին նախատացեալ, և անդանօր դադարեալ ամիսս երիս, բանակէր ընդդէմ զօրացն Յուլիանոսի, պահելով 'ի Թշնամեացն ասպատակէ զաշխարհն զայն. և զայն լուեալ հռովմայեցւոցն, բազմութիւն զօրաց եկեալ զետեղէին հանդէպ սոցա, և խնդրէին օրինօք պատերազմել ընդ միմեանս ։ Իսկ զօրքն որ ընդ սրբոյն Սարգսի տեսանելով զայնքան ամբոխ բազմութեան զօրու ծանու և զինու, զանգիտէին յոյժ և ասէին կորնչել 8 'ի ձեռաց նոցա, յաղագս անկարելի գոլ պատերազմել ընդ այնքան ուժոյ բըռնութեամբ ։ Իսկ երանելւոյն տեսանելով այնքան զանգիտեալս յերկեւղէ նոցա զիւր զօրսն, տեղի եգիտ յայտնի առնել նոցա զիւրոյ զհաւատոյն զքաջմարտութիւն, և ըզհեթանոսականացն աղարտութին 9, ասէր. Եղբարք իմ և զինուորակիցք, եթէ հաւատայք բոլորով սրտիւ յարարիչն երկնի և երկրի, ոչ երբէք զարհուրեսցին սիրտք ձեր 'ի բազմութենէ անհուն զօրացն Թըշ-

նախնեաց մերոց . այլ անպարտելի
զօրութեամբ Ճշմարտին Աստուծոյ
իմոյ , մինչ 'ի ձէնջ զհաւատարան հա-
լածեցայ 'ի նոցանէ և երկուքեան ըզ-
բերան շարժեցեն ; իսկ անուա-
նեալ աստուածքն ձեր ոչինչ ու-
նին զօրութիւն , և ոչ լուսաւորել
զոր պաշտէք , և ոչ տարբերաց-
բնութիւնք , և ոչ պատկերք կռոցն
որոց երկրպագէք . քանզի աչք են
նոցա և ոչ տեսանեն . ականջք են և
ոչ լսեն , ձեռք և ոչ շօշափեն , ոտք
և ոչ գնան , և ոչ բարբառին կո-
կորդք նոցա և բերանք իւրեանց :
Եւ նոքա ասեն . իսկ արդ մեր է
Աստուածն քո Սարգիս , եթէ նո-
քա չեն աստուածք , ցոյց մեզ զի
տեսեալ հաւատասցուք 'ի նա : Եւ
ասէ երանելին . իմ Աստուածն ա-
մենայն եղելոց է Աստուած , երե-
ւելեաց և աներեւութից . Հայր
անսկզբն և անեղ արարիչ եղելոց
ամենայնի . Որդի ծնեալ 'ի Հօրէ
անժամանակապէս յառաջ քան զյա-
ւիտեանս , էակից Հօր և արարչա-
կից . Հոգին սուրբ բղխումն 'ի Հօ-

րէ 10 անժամանակ և անքննաբար, փառակից Հօր և Որդւոյ. երեք անձինք կատարեալք, մի բնութիւն և մի աստուածութիւն անբաժանելի. որով՝ի լինելութիւն եկին արարածք ամենայն, երկնայինք և երկրաւորքս, բանականք կենդանիք. և որպէս զիմանալի աշխարհն վերին անմարմին բանականացն ետ ՝ի բնակութիւն, նոյնպէս և զգալի աշխարհս մարմնաւոր բանականաց 11 մարդկան: Զոր ստեղծեալ զմարդն առաջին, և ըզկինն ՝ի հողոյ և յանմարմին բնութենէ հոգւոյ ՝ի պատկեր աստուածութեան իւրոյ, եդ զնոսա յանմահական ՝ի դրախտին փափկութեան, ՝ի միոյ միայն ծառոյ հրամայելով չուտել. որք ոչ պահելով զպատուիրանս նորա կորուսին զանձառելի զփառսն. և փոխանակ անմահութեանն զմահ ժառանգեցին, և ընդ օրհնութեանն զանէծս, և ընդ դրախտին զփշաբերս երկիր. և փոխանակ անաշխատաբար անձմանն զոր հանդերձեալ էին ունել ՝ի դրախտին, անաստանեղէն ծննդեամբ 12

հրաման ընկալեալն բազմանալ 'ի վերայ երկրի • որոց աճեալ 'ի բազմութեան ոչ կացին 'ի պատուիրանս արարչին, առաջին յանցանօքն շատացեալք • այլ այնքան յաճախեցին 'ի մեղս՝ մինչեւ բարկանալ Աստուծոյ 'ի վերայ նոցա, և խրատել ջրով և հրով, և զանազան հարուածովք • և ոչ միայն ոչ դարձան 'ի բարիս, այլ եւս գրգեցան 'ի չարիս, զի փոխանակ արարչին արարածոցս երկիր պագանէին : Բայց և այնու ամենայնիւ ոչ անտես արար զմարդկային բնութիւնս, այլ յայտնեաց զինքն արդարոց յիւրաքանչիւր ժամանակս, խօսելով ընդ Աբրահամու և զաւակի նորա • որոց և ետ օրէնս գրեալ մատամբ իւրով 'ի տախտակս քարեղէնս 'ի ձեռն Մովսէսի առաջին մարգարէին • երեւեցոյց յետ նորա և դասս մարգարէից որք խրատէին յիւրաքանչիւր ժամանակս զմարդիկ • և մարգարէանային վասն գալստեան Որդւոյն Աստուծոյ : Որ առաքեալ 'ի Հօրէ 'ի փրկութիւն ազգի մարդկան, 'ի ժամանակս վեր-

չինս էառ զմերս բնութիւն 'ի սրբոյ կուսէն Մարիամայ , և ծնեալ 'ի նմանէ անախտաբար , շրջեցաւ ընդ մարդկան ամս երեսուն . և եկն 'ի Յորդանան առ Յովհաննէս մկրտիչ առնուլ մկրտութիւն , զի զմեղս Ադամայ լուասցէ ջրովն Յորդանանու . վկայեցաւ յերկնից 'ի Հօրէ եթէ Դա է որդի իմ սիրելի , և 'ի սուրբ Հոգւոյն աղաւնակերպ իջմամբ . յայտնեաց ինքն զաստուածութիւն իւր 'ի ձեռն պէսպէս սքանչելեացն զոր կատարեաց , ըզհիւանդս բժշկելով , զկոյրս լուսաւորելով , զմեռեալս յարուցանելով , 'ի վերայ ծովուն գնալով , սակաւ հացիւ զբեւրս կերակրելով . և զայլս բազմապատիկս , զորս ակարանայ լեզու առ 'ի պատմել :

Իսկ ազգն հրէական զայսքան բարութիւն գտեալ առ 'ի Նմանէ , ապերախտ առ բարեգործն եղեն . և մատնեալ զնա խաչի և մահու . որ և ինքն կամաւ ետ զանձն և ոչ 'ի հարկէ . զի կատարեսցէ զմարգարէիցն կանխասացութիւն և զաշխարհի 1

փրկութիւն. և յայսմիկ արար ՚ի մեռանելն մարմնով զզօրութիւն աստուածութեան իւրոյ. զի արեգական խաւարեցաւ, երկիր շարժեցաւ, վէմք պատառեցան, վարագոյր տաճարին նորա հերձաւ, գերեզմանք բացան և մեռեալք յարեան. էջ ՚ի գերեզմանն մարմնով որպէս մարդ, և յարեաւ ինքնիշխանաբար յաւուր երրորդի որպէս զԱստուած. երևեցաւ աշակերտաց իւրոց յետ յարութեանն և խօսեցաւ ընդ նոսա զաւուրս քառասուն, և համբարձեալ յերկինս նստաւ ընդ աջմէ Հօր իւրոյ. և գալոց է նովին մարմնով դատել զաշխարհ ամենայն ըստ իւրաքանչիւր գործոց. բարեգործացն և ուղիղ հաւատացելոց յԱստուած՝ զբարիս հատուցանելով, իսկ չարագործացն և անհաւատիցն զտանջանս յաւիտենականս: Արդ այս է ճշմարիտ աստուածպաշտութիւն, որում թէ հաւատայք բոլորով սրտիւ ձերով, և ՚ի բաց կայք ՚ի խաւարային պաշտամանց ձերոց, ընդունիցիք

զյաւիտենից կենդանութիւնն, յոր-
ժամ գայ Քրիստոս փառօք ա-
տուածութեան իւրոյ , և ոչ տան-
ջիցիք ընդ անհաւատսն 'ի հուրն
անվախճան :

Զայս և առաւել քան զայն խօ-
սէր երանելին Սարգիս առաջի բազ-
մութեան զօրացն . և բազումք 'ի
նոցանէ հաւատացին 'ի տէր . և
մկրտեցան 'ի քահանայից անտի՝ որք
ընդ սրբոյն :

Իսկ զօրացն Հոռոմոց գունդ
բազում հասեալ արշաւել կամելով
'ի կողմանս Տաճկաստանի որք ընդ
պահպանութեամբ սրբոյն Սարգ-
սի , և խաւարային օդովք պա-
շարեալք որպէս Ասորեստանեայն
առ Եղիսէիւ , մոլորէին 'ի ճանա-
պարհէ անտի աշխարհէին յոր հան-
դերձեալ էին մտանել , և ցրուեալքն
ոչ տեսանէին զմիմեանս . բազումք
'ի նոցանէ և տեսիլս ինչ պատմէին
անմարմնական զօրաց , և ձայն լսելի
եղեալ 'ի նոցանէ , եթէ Մի յան-
դըգնիք պատերազմել ընդ ծառայ-
ին Աստուծոյ սրբոյն Սարգսի ,

եթէ ոչ ամենեքեան կորնչիք ։ Զոր տեսեալ սրբոյն փառս վերառաքէր ամենազօրին Աստուծոյ, և ասէր. Մեծ է տէր մեր և մեծ է զօրութիւն նորա. և ո՞վ պատմեսցէ զքանչելիս նորա. եկայք եղբարք իմ պատուականք, մատուսցուք փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ յայտնեաց զողորմութիւն իւր առ ծառայս իւր. և զզօրութիւնն առ հակառակորդսն մեր ։ Իսկ զօրքն ամենայն հաստատեալք 'ի հաւատս, աղաղակէին և ասէին. Մեծ է Աստուածն քրիստոնէից և անհաս է զօրութիւն նորա. հաւատամք այսուհետև յամենասուրբ Երրորդութիւնն և 'ի մի աստուածութիւնն զոր քարոզեաց մեզ Սարգիս ։ Եւ մատուցանէին ամենեքեան երկրպագութիւն առաջի Աստուծոյ, և ընծայէին նուէրս բազում զենմամբ անասնոց կենդանեաց, և ուրախ լինէին միշտ 'ի վարդապետութիւն սրբոյն ։

Իսկ բարխատեացն սատանայ բանսարկուն գրգեաց զոմանս 'ի զօ-

րաց անախ, յորոց ոչ ծագեաց յոգիս լուսաւորութիւն աւետարանին Քրիստոսի. և գնացեալ առ Թագաւորն Շապուհ, Ապստամբեաց, ասեն, Սարգիս յաստուածոց և 'ի ձէնջ արքայ, և քարոզէ հաւատալ 'ի Յիսուս Նազովրեցի. և զզօրսն ամենայն ապստամբեցոյց զկնի մոլորութեանն իւրոյ. միաբանեալ է սիրով և ընդ զօրացն Հոռոմոց:

Զայս ամենայն լուեալ Թագաւորին, և 'ի մեծի եղեալ տրտմութեան և խռովութեան, խորհէր ընդ աւագանւոյն թէ զինչ արասցէ. և առեալ զխորհուրդս՝ առաքէ նմա պարգևս մեծամեծս, գրեալ առ նա նամակ որ ունէր օրինակ զայս. Լուաք բարի համբաւ զքէն, պատուականդ 'ի զօրագլուխս մեր Սարգիս, յաղագս մտերիմ լինելոյ թագաւորութեանս մերոյ, և ուրախ եղաք յոյժ. վասն որոյ սէր մեր յաճախեաց 'ի վերայ քո որպէս առ հաւատարիմ ծառայ և իմաստուն. ըստ որում առաքեաց քեզ Թագաւորութիւնս մեր ձիր արժանաւոր մեծանձնութեան քո. Ողջ լեր:

Եւ յետ այսորիկ միւսանգամ խորհրդածեալ արքայն ընդ խորհրդականս իւր, առաքէ զորդի ե-րանեկելոյն՝ որ էր 'ի գրան արքունի՝ հրաւիրակ նմին, իբրու զի առանց կարծեաց ինչ եկեսցէ վաղագոյն, գրելով օրհնակ զայս. Եհաս առ մեզ, ով վեհագոյնդ զօրագլխաց մերոց, Սարգիս, կորովամիտ քո իմաստութեան հռչակ. զի ընդ օրհնակի խոհականն 13 իմաստասիրաց շահեցայք զխաղաղութիւն աշխարհիդ նուաճելով զԹշնամիսն. արդ վասն զի զայդ բարւոք տնօրինեցէք, հրամայեսցէ այսուհետեւ Թագաւորութիւն մեր կանխաւ ժամանել առ մեզ ընդ որդւոյ քում. քանզի կարօտիմք զկատարեալ քո խոհեմութիւն խորհրդակից առնելոյ յաղագս Թագաւորութեանն Հռովմայեցւոց, հուպ հանդերձեալ առլոյ ընդ մեզ պատերազմ. Ողջ լեր:

Եւ յուղէ անկեալ որդւոյ նորա մերձ գայր 'ի սահմանն յորում էր բանակեալ հօր նորա 14. և 'ի ճանապարհի անդ պատահեալ Թշնա-

մեացն դասուց, ըմբռնեցին զպա-
տմնէին և զօրս ընդ նմա, և տարան
՚ի բանակն իւրեանց. և այդ եղեալ
սրբոյն ներգործութիւն իրացն որ
յազգմանէ չարին, տրտմութիւն ոչ
սակաւ տիրեաց նմա և ամենայն զօ-
րացն: Ապա զմարդկային օգնակա-
նութեան յուսոյ անփոյթ արա-
րեալ, յԱստուած ապաւինէր. ո-
րում և պաղատանս արտասուալից
առաջի անկեալ մատուցանէր. յի-
շելով յաղօթելն զսքանչելեացն ըղ-
կատարումն յիւրաքանչիւր դարս
առ Նոյ և Աբրահամ, Իսահակ և
Յակովբ և ամենայն նահապետսն,
եթէ Որպէս լուար աղօթից նոցա,
լուր և ինձ մեղաւորիս. և ըստ ո-
րում Յակովբայ արդարոյ շնորհե-
ցեր զՅովսէփ ՚ի տեսանել, տուր և
ինձ զորդի իմ վերստին տեսանել.
զի մի՛ դայթակղեալ կորիցեն նոր
հաւատացեալ ժողովուրդս որք
դարձան առ քեզ քարոզութեամբ
ծառայի քո, այլ արա տեսանել
սոցա զողորմութիւն քո առ իս ՚ի
փառս անուանդ քո սրբոյ: Եւ զե-

րիս աւուրս ոչ դադարէր յաղօթե֊
լոյ զցայգ և զցերեկ. և ահա յա֊
ւուրն երրորդի առեալ զորդի նո֊
րա ուխտ ըմբռնեցինն և զորս ընդ
նմա՝ ածին առաջի երանելւոյն
պատմելով զեղեալ սքանչելիսն իմն
առ նոսա, եթէ յորմէ հետէ մուծաք
զսա 'ի բանակ անդր, ոչ դադա֊
րեաց խռովութիւն 'ի զօրացն, մին֊
չեւ զմիմեանս սատակել բազմաց.
և տեսիլ երեւեալ զօրագլխացն, Ե֊
թէ ոչ դարձուցանէք զպատա֊
նեակդ առ հայր իւր, ամենեքեան,
ասէ, սատակեցջիք: Զոր տեսեալ
երանելւոյն և լուեալ, լի եղեւ խըն֊
դութեամբ, և անկեալ 'ի վերայ ե֊
րեսաց իւրոց գոհանայր զԱստու֊
ծոյ, և տօն ուրախութեան կատա֊
րէին զօրն զայն՝ զենմամբ խոյոց և
զուարակաց 'ի նուէրս անուան
Բարձրելոյն, զորս բաշխելով կա֊
րօտելոց. ուրախ լինէին 'ի տէր հո֊
գեւոր և մարմնաւոր խնդութեամբ:

Ցետ այսորիկ իբրեւ լուաւ սուրբն
Սարգիս յորդւոյ իւրմէ զհրա֊
մանս Թագաւորին, զի կոչէր զնա

տիպով. ծանեաւ հոգւոյն զչա-
րութիւն ամպարշտին. և կոչեցեալ
առ ինքն զզօրսն ամենայն որք հա-
ւատով զօրացեալ հաւատացեալ
էին 'ի Քրիստոս, ասէ ցնոսա. Եղ-
բարք, ահա ժամանակ ընդունելի.
յորում պարտ է զբարեպաշտու-
թիւն հաւատոց մերոց յայտնի առ-
նել. և խոստովանել զտէր մեր
Յիսուս Քրիստոս առաջի մարդ-
կան, զի և նա խոստովանեսցի զմեզ
առաջի Հօր իւրոյ և հրեշտակաց
սրբոց: Իսկ զօրացն իբրև ընդ մի
բերան պատասխանի տուեալ նմա
ասեն. Ընդ քեզ եմք, ով հայր
պատուական, 'ի կեալ և 'ի մեռա-
նել: Եւ սուրբն ասէ. Հրամայեալ
է մեզ 'ի տեառնէ ոչ ծածկել զլոյս
հաւատոց մերոց, այլ դնել 'ի վե-
րայ աշտանակի. և քարոզել 'ի վե-
րայ տանեաց. և մի երկնչել յայն-
ցանէ որ զմարմին սպանանեն և զո-
գին ոչ: Բայց ես անպիտանս յա-
մենայնի ստացական ստունգանող
դատայ հրամանաց տեառն իմոյ. քան-
զի ծածկեցի յիս ինքեան իբրեւ

զճրագ ընդ գրուանաւ զլուսաւո-
րութիւն հաւատոյն որ առ նա՝ յա-
ղագս երկեւղի մարդկան։ Այլ
այժմ, եղբարք, աղաչեցէք զՏէր,
զի տացէ ինձ համարձակութիւն
աներկեւղ քարոզելոյ զանուն նո-
րա առաջի թագաւորաց և իշխա-
նաց. և հաստատեսցէ զոտս իմ 'ի
վերայ վիմին հաւատոյ, զի մի սա-
սանեսցայց 'ի մարդկանէ, որոց հան-
դերձեալ եմ կալ առաջի. քանզի
այնր աղագաւ է կոչումն այս։ Եւ
զօրականացն պատասխանի տուեալ
ասեն ցսուրբն. Աղաչեմք և խոր-
հրդակից լինիմք ատեանդ մերոյ՝
ոչ տեսանել զերեսս թագաւորին,
և մի ինչ զանգիտեր. քանզի յամե-
նայն պատերազմունս որ պատահեին
առաջի քո միաբանիմք ամենեքեան
մեք. նա թէ մարտիցէ ընդ մեզ,
յաղթեսցուք նմա զօրութեամբ ատեանն
մերոյ յոր հաւատացաք։ Պատաս-
խանի ետ սուրբն և ասէ ցնոսա. Ոչ
հրամայէ տէր մեր ընդ մարմնոյ զօ-
րանալ, այլ հոգւով. և ոչ պատե-
րազմական մեքենայիւք, այլ համ-

բերութեամբ մեր 'ի նեղութիւնս յաղթել թշնամեաց մերոց ։ Արդ մի խափանէք զիս յառաջակայ ընթացից կենաց ճանապարհին ։ այլ աղաչեցէք զտէր զի արժանի արասցէ զիս մեռանել վասն անուան իւրոյ սրբոյ ։ և ձեզ հովանի լիցի աջ նորա , և հաստատեսցէ 'ի հաւատս ճշմարիտս զոր ընկալայք 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն ։ և եթէ սիրէք զիս բոլորով սրտիւ ձերով, նոյն ինքն եղիցի ձեզ փրկութիւն 'ի կեանս յայս , և յաւիտենական կենացն արժանի արասցէ ընդ ամենայն սուրբս ։

Զայս և որ սոցին նման խօսեցաւ երանելին ընդ հաւատացեալ զօրացն , հաստատէր զնոսա 'ի հաւատս ։ և այսպէս բաժանեալք 'ի միմեանց բազում արտասուօք համբերձ որդւովն , և ոմանք 'ի զօրականացն յուղի անկեալ զայլն առ թագաւորն ։ զոր տեսեալ ուրախ եղեւ յոյժ ։ և ասէ ցխորհրդակիցսն իւր ։ Կարծեմ անիրաւ գոլ զամբաստանութիւնն զնմանէ , և

'ի նախանձուէ շարժեալք, այլ ոչ ուղղութեամբ ։ Եւ դարձեալ 'ի սուրբն Սարգիս ասէ · Բարի է գալուստ քո իմաստուն և հաւատարիմ 'ի զօրագլուխս իմ · ընկալցիս ողորմութիւն առ 'ի մէնջ ըստ անստերեւր հաւատոց որ ցուցեր մեզ ։ Վասն որոյ մեծացուցանէ ըզքեզ Թագաւորութիւն մեր · և գլուխ ամենայն զօրաց կացուսցէ յաղագս խոհեմագոյն քո իմաստութեան ։ Եւ շնորհէր նմա ձիս բազումս և պատիւս գերապանծ ճոխութեան և պայծառութեան ։ Բայց նա ոչ 'ի բանից անտի պարտեցաւ, և ոչ 'ի ճշմարտութենէն՝ յաղագս երեւելի մեծութեանն՝ այլափոխեցաւ · այլ տայր նմա պատասխանի իմաստախոհ բանիւք · Գոհանամ, ասէ, զԱստուծոյ իմոյ որ փրկեաց զիս 'ի ձեռաց թշնամեաց իմոց, որք ոչ իմաստութեամբ մերով և ոչ զօրութեամբ յաղթահարեցաք, այլ ամենազօրին Աստուծոյ կարողութեամբ · Նոքա են և պարգեւքն շնորհեալք առ 'ի ձէնջ ·

քանզի ետ ձեզ իմաստութիւն ճա-
նաչել զճշմարիտն ։ Եւ զայս · ասա-
ցեալ սրբոյն, եւ յերեսաց նորա ։
Եւ ասէ Թագաւորն ցմերձակայս
իւր. Կատարեալ 'ի ճշմարտութեան
տեսանեմ զայրս զայս ։ Իսկ չարա-
խօսքն յառաջ մատուցեալ ասեն.
Թագաւոր և արքայ քաջ, զնազո-
վրացւոյն ունի զուսումն և զաղանդն,
վասն որոյ և Աստուած ոչ զմերս
այլ զնազովրայեին զՅիսուս անուա-
նէ. ապա թէ ոչ՝ հարցցէ ցնա Թա-
գաւորութիւն քո, և ծանիցէ զբա-
նիս մերոյ զճշմարտութիւն ։ Եւ իբ-
րեւ լուաւ զայս Թագաւորն, տըրա-
մեցաւ յոյժ, և խորհէր 'ի միտս,
թէ զիա՞րդ գտցէ զասացելոցն երա-
ւաքանութիւն ։

Եւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ
եկն տօն աստուածոցն. և ել հրա-
մանն յարքայէ ժողովել բազմու-
թեանն յատրուշանս կրակարանին
յորում զհուրն լուցանէին ըստ
պարսկական օրինացն. յորս էին
կանգնեալ և պատկերք կռոց երկո-
տասան ։ Կոչեցեալ եղեւ և՝ Սարգիս

ընդ պատուական զօրագլխացն գալ հանդերձ որդւովն իւրով 'ի հանդէսն յայն. և երանելւոյն ծանուցեալ զհասեալ ժամն որ յաղագս Աստուծոյ պատերազմին, յարուցեալ կայր յաղօթս առ Աստուած և ասէր. Տէր Աստուած փրկիչ յուսացելոցս 'ի քեզ՝ որ խոստացար ծառայից քոց և ասացեր, թէ Յորժամ տանիցեն զձեզ առաջի թագաւորաց, մի՛ հոգայցէք վասն տալոյ պատասխանի. զի ես տաց ձեզ բան և իմաստութիւն, որում ոչ կարիցեն ընդդիմակաց լինել հակառակորդքն ձեր. արդ տուր և ինձ, տէր, բան 'ի բանալ բերանոյ իմոյ յասպարիզիս որ առաջի կայ. և զօրացո զիս համբերել չարչարանաց և համահաւաք մահու, որ գան 'ի վերայ իմ վասն անուանդ քո սրբոյ. և քեզ փառք յաւիտեանս:

Եւ իբրեւ կատարեաց զաղօթսն, գնաց հանդերձ որդւովն իւրով 'ի կոչումն արքային. և տեսեալ զնա թագաւորն, ասէ բարձր ձայնիւ. Սարգիս, պատուականդ 'ի զօրա-

գլուխս զօրաց իմոց, յառաջ մատուցեալ զոհեա հրոյ ըստ օրինի ամենեցուն մեր, և արկ խունկ առաջի մեծամեծաց աստուածոցն, որպէս արդարև աստուածանէր. որպէս զի չարախօսքն քո յամօթ եղեալ, պայծառացիս դու բարձրագոյն փառօք: Պատասխանի ետ սուրբն Սարգիս և ասէ. Ես ճշմարտին Աստուծոյ մատուցանեմ զոհ և երկըրպագութիւն, այնմ որ արար զերկինս և զերկիր և որ 'ի նոսա արարածք իցեն, որ է կենդանի և յաւիտենական Թագաւոր. որում պարտ էիրն, ով Թագաւոր, եթէ ունէիր իմաստութիւն՝ երկիրպագանել և փառաւորել, և ոչ տարրեղէն արարածոց գոյացելոց 'ի նմանէ և անշունչ պատկերաց 'ի մարդկանէ եղելոց: Զայս լուեալ արքայն ասէ. Ահա յայտնի եղեւ մոլորութիւն քո, ով Թագաւորութեան հակառակ, ով արբեալդ յիմարութեամբ, և զկողմանձին քում խնդանակամ 'ի բեւրուց բարեացն զորս հանդերձեալ էաք առնել քեզ:

Իսկ դու փոխեցեր զսէր քո առ այր
ոմն հրեայ որ վասն մեղաց իւրոց
խաչեցաւ. և այլ ևս բանիւք բա՛մ-
բաք հայհոյէր զՔրիստոս ։

Իսկ երանելին իբրև լուաւ զայս,
ոչ կարաց համբերել, այլ լցեալ
զբերան իւր խուխով եթուք ընդ-
դէմ ամպարշտին. և ոյժ առեալ 'ի
Հոգւոյն սրբոյ, և ձգեալ զձեռն՝
մանրեաց զպատկերս կեղծաւոր կռ-
ւոցն. և ասէ. Ո՛վ անմիտք, ա-
հա պաշտամունք ձեր փշրեցան, և
հուրդ որում երկրպագէք, մօ-
խիր է ցնդելի ։ Եւ յորժամ տեսին
զայս և լուան մոգքն և բազմութիւն
հեթանոսացն որ անդ կային, շար-
ժեցան բարկութեամբ 'ի վերայ սըր-
բոյն. և բուռն հարեալ զնմանէ,
քարշէին յայսկոյս և յայնկոյս, և
ազազակէին սպանանել զնա. և 'ի
յանդուգն յարձակմանէ անօրի-
նացն, սպանաւ 'ի մէջ ամբոխին
Մարտիւրոս անուն որդի նորա,
գործով ընկալեալ զվկայականն ա-
նուն, պսակակից նախընթաց վը-
կայիցն եղեալ 'ի Քրիստոս ։ Իսկ

Թագաւորն արգել զբազմութիւնն 'ի սպանանելոյ զերանելին , և հրաման ետ կապել երկաթեաւ և դընել 'ի բանդի . և արտմեցաւ յաղագս մահուան որդւոյ նորա , զի առանց կամաց նորա եղեւ :

Իսկ երանելին 'ի բանդին գոհանայր զԱստուծոյ , զի արժանի եղեւ վասն անուան նորա կրել զչարչարանս և զկապանս . եւս և վասն որդւոյ իւրոյ՝ զի վկայական արեամբ պսակեցաւ 'ի Քրիստոս . և մինչդեռ 'ի բանդի անդ կայր յաղօթս , 'ի մէջ գիշերին երեւեալ նմա բանսարկուն սատանայ , ասէ . Ով Սարգիս , զինչ շահիս 'ի յամառ խորհրդոց . հաւանեա կամաց Թագաւորին և լեր երանելի յաշխարհի , և մի վասն անոտի յուսոյ լքաներ ըզկեանս քո : Ասէ ցնա սուրբն Սարգիս . Երթ յետս հակառակորդ ճըշմարտութեան և հայր ստութեան . զի խրատ քո ոչ է պատճառ կենաց , այլ մահուան յաւիտենից ունողացն զնա , որ ընդ քեզ արկանին 'ի կորուստ , այնոքիկ որք առնեն զոր

տանեաց. և նոյնժամայն հալածեալ
չարին եղեւ աներեւոյթ ։

Եւ ահա յանկարծակի երե-
ւեալ նմա տէր Յիսուս 'ի բանդին
հանդերձ երկնաւոր զօրօքն, և ըն
եղեւ տունն գերապայծառ լուսով
առաւել քան զարեգակն, և լու-
ծան վաղվաղակի կապանք ձեռաց
և ոտից երանելւոյն ։ Եւ ձայն լսելի
եղեւ 'ի լուսոյ անտի և ասէ. Քա-
ջալերեաց բարի և հաւատարիմ
ծառայ իմ Սարգիս. և մի երկիցես
'ի սիրտ քո 'ի սպանողաց զմահկա-
նացու մարմինդ. զի մտանելոց ես
'ի տրամանկանաց տանս և 'ի հոգա-
նիւթ յարկացս յանվախճան ուրա-
խութեն լուսաւորչէն խորանաց տեառն
քո ։ Եւ 'ի տեսիլ լուսոյ փառաց
այնորիկ ծաղկման, ժողովեցան
բազմութիւնք որ շուրջ կային ըն-
բանդին 'ի տուն անդր և լցեալք
զարմանալեօք, տային փառս Քրիս-
մարդասիրին Աստուծոյ զոր քարոզէրն
Սարգիս. մանաւանդ իբրեւ տեսա-
նէին զերանելին Սարգիս զի արձա-
կեալ էր 'ի կապանաց և կայր յա-

ղօթս առ Աստուած. և վաղվաղակի երթեալք պատմեցին թագաւորին զզարմանչելիսն զոր տեսին, և հրամայէր առաջի իւր ածել զերանելին: Եւ իբրև տարան, ասէ ցնա. Ով անիմաստ և թշնամի անձին քում. զինչ շահ եղեր քեզ հակառակութիւն հրամանաց մերոց, բայց թէ զանարգանս և զչարչարանս և զմահ որդւոյ քո. և թէ ոչ զղջացեալ դառնաս՝ չարաչար մահուամբ եւցես ՚ի կենացս. իսկ եթէ փոխեսցիս յանմիտ խորհրդոց այտի, և գաս ՚ի լաւութիւնն, յիշելով զսէրն մեր զառաջին, քաղցրութիւն մեր և ներողութիւն ոչ համարին ՚ի մեզս զսխալանսդ որով յանցաւոր դառար. այլ եւս գերագոյն պատուոյ և փառաց արժանաւորեսցիս: Արդ. յայսմ աւուր միայն անսա հրամանաց մերոց, և յետ այսորիկ երթ առ-նազովրեցին: Զայս ասէր թագաւորն, վասն զի ոչ կամէր զմահ որդւոյն, քանզի Յուլիանոսի կայսեր հաստատեալ էր համբաւ գալստեան:

Երանելին ասէ, Զամօթ և զնա-

խաւարին աստուածոյ քոյ ոչ զգա-
ցեր. քանզի խաւար և անլոյս են
երբեւ զաստուածսն քո. զիմարդ-
տեսանելով մանրեալ զնոսա երբեւ
զփոշի, և ոչ ծանեար զանկարութիւն
նոցա: Այլ իմ պարծանք և յոյս
և Աստուածն իմ է Յիսուս Քրիս-
տոս, զի որպէս զորդին իմ ընկալաւ
բարեպաշտութեան հաւատով, և
զիս ընկալցի 'ի նոյն հաւատս արմա-
տացեալ և հաստատեալ. զորմէ գո-
հանամ. և փառաւորեմ զի ընկա-
լաւ զպտուղ որովայնի իմոյ, և ոչ
ետ խաբել մոլորութեան քո. և
արդ ասեմ յայտնապէս զի կուրու-
թիւն քո զիս ոչ խաւարեցուցէ, և
անիմաստութիւն քո զիս ոչ յիմա-
րեցուցէ:

Իբրեւ լուաւ զայս թագաւորն
լի եղեւ սրտմտութեամբ, և հրա-
մայեաց մերկացուցանել 'ի նմանէ
զպատմուճանն զինուորական և ա-
սէ. Սարգիս՝ որ ոչ ծանեաւ զպա-
տիւն զանպատուութիւն ծանիցէ
և 'ի մեղս իւր մեռցի. և հրաման
ետ հանել արտաքոյ քաղաքին և

սպանանել: Արդ տուեալ զնա դահ-
ճացն վարէին զնա բռնութեամբ
մինչեւ 'ի մահուն տեղի. Երթային
ընդ նմա բազմութիւնք յոյժ քրիս-
տոնէից եւ հեթանոսաց. եւ իբրեւ
հասին 'ի տեղին որ անուանեալ կո-
չէր Սալք, դադարեալ սրբոյն.
քանզի անդանօր հանդերձեալ էր
կատարիլ, եւ զձեռս տարածեալ եւ
կացեալ յաղօթս բարձր ձայնիւ ա-
սելով.

Տէր Աստուած յաւիտենական
որ արժանի արարեր զիս մեռանել
վասն անուանդ քո սրբոյ, լուր ա-
ղաչանաց ծառայի քո, եւ ընկալ զիս
ընդ այնոսիկ որ սիրեցին զօր երե-
ւելոյ գալստեան քո, եւ եղեն
ճանապարհակից քեզ չարչարանօք
խաչի եւ մահու. եւ զոր միանգամ
պատրանօք չարին մեղուցեալ եմ
'ի մանկութենէ իմմէ առաջի քո
մինչեւ ցայժմ կամաւ եւ ակամայ,
գիտութեամբ եւ անգիտութեամբ,
լուա եւ մաքրեա ողորմութեամբ
քո 'ի ձեռն հեղման արեան իմոյ:
Շնորհեա եւ հաւատացելոց քոց

ամենեցուն որք յիշեն զանուն իմ 'ի բարեխօսութիւն, զթողութիւն մեղաց, և յիւրաքանչիւր վըտանգից զփրկութիւն հոգւոյ և մարմնոյ, զդիւաց հալածումն, զհիւանդաց բժշկութիւն, 'ի պատերազմունս յաղթութիւն, 'ի կապանաց և 'ի բանդից զարձակումն, 'ի ծառայութենէ զազատութիւն, 'ի խռովութեանց զխաղաղութիւն, 'ի նեղութեանց անդորրութիւն, 'ի ճանապարհի զառաջնորդական պահպանութիւն, ալէկոծելոց 'ի ծովու զհանդարտութիւն, յերաշտութեան զհոսումն անձրեւաց, քաղցրութեան՝ յառատապէս պտղաբերութիւն: 'ի կարկտաբեր և յեղեամնարկու օդոց բռնութենէ զդադարումն արագապէս, մարմնոյ և ամենայն վնասակար զեռնոց որ շարժին 'ի բարկութենէ քումմէ պատուհասել զմարդիկ վասն մեղաց՝ զհալածումն. և որք նուիրական ընծայիւք և ողորմութեամբ զյիշատակս մեր կատարեն, ընկալ 'ի հոտ անուշից, և վարձատրեա բիւրապա-

տիկ բարութիւնս տուր և 'ի հան-
դերձելումն . և զհոգիս իմ ընկալ
յօթեվանս արդարոց 'ի հանգիստն
յաւիտենականն , և քեզ փառք յա-
ւիտեանս ։

Եւ յետ կատարման աղօթիցն ,
էջ առ նա հրեշտակ տեառն յեր-
կնից՝ ունելով 'ի ձեռին իւրում պսակ
լուսապայծառ , և ասէ . Զօրացիր
քաջ նահատակդ Քրիստոսի , և մի
երկնչիր 'ի սպանողացդ զմարմինդ ,
քանզի բացաւ քեզ դուռն արքայ-
ութեան երկնից , և զոր ինչ խըն-
դրեցեր տուաւ քեզ յԱստուծոյ .
և ամենայն հաւատացելոց խըն-
դրուածք յանուն քո շնորհեսցի 'ի
տեառնէ ։ Եւ տեսեալ բազմու-
թեանն զհրեշտակն Աստուծոյ և ըզ-
պսակն լուսոյ ա'ղաղակէին ասելով .
Մեծ է Աստուածն քրիստոնէից ,
և բայց 'ի նմանէ այլ ոչ գոյ Աս-
տուած ։ Իսկ սրբոյն դարձեալ առ
դատաս հաւատացեալ զօրայն և ա-
սէ . Լուարուք ինձ այժմ հաւա-
տացեալք 'ի Քրիստոս , որք մերձ ե-
ղեալ տեսանէք զնահատակութիւնս

իմ. մի՛ երկիցի ձեզ տեսանել 15 ըղ-
մահկանացու մարմնոյ իմոյ կրել
անյուսաբար զտրտմութիւն. զի ե-
թէ այսօր և եթէ վաղիւ ընդունե-
լոց է սա հարկաւորապէս զպարտիս
նախահօրն. բայց յոյս իմ որ 'ի
Քրիստոս՝ անվախճան է. որով ու-
նիմ վերստին առնուլ զսա անմահ
և անապական 'ի գալստեան նորա.
և ես ցնծամ և ուրախ եմ այսօր,
զի զփափագումն իմ որ 'ի ման-
կութենէ՝ կատարեաց Տէր, չար-
չարանաց իւրոց լինել հաղորդ, և
վկայիցն պսակաց կցորդ. և որպէս
զօրացոյց զիս 'ի պատերազմունս
մարմնաւորս թշնամեաց, զօրացուս-
ցէ և այսօր 'ի վերայ ոգւոյ թշ-
նամւոյն, և որք նովաւ պատերազ-
մին: Եւ արդ իմ զընթացս բարի
ճանապարհի կենցաղոյս կատարեալ
և զհաւատոն պահեալ, գնամ ու-
րախութեամբ առ Քրիստոս. և
խաղաղութիւնն Աստուծոյ եղիցի
ընդ ձեզ յաւիտեան: Եւ զայս ա-
սացեալ եդ ծունր յարեւելս, և
տեառնագրեալ զինքն նշանաւ խա-

ջին, և խոնարհեցուցեալ զպարա-
նոցն ասէ. Տէր Յիսուս ընկալ զոգի
իմ. և եհատ գահիճն սուսերաւ
զգլուխ երանելւոյն. և նոյնժամայն
ծագեաց լոյս երկնային և շրջապա-
տէր զմարմնով նորա. և ցուլացեալ
'ի լուսոյ անտի բոց այրէր զոմանս
'ի հեթանոսաց անտի, և մնացեալքն
'ի նոցանէ փախստական լինէին:
Եւ ձայն լսելի յերկնից լինէր որ
ասէր. Վայելչապէս կատարեցեր
զճգնութիւնդ քո, ով երանելիդ
Սարգիս. արդ եկ և ժառանգեաց
զհանգիստն զյաւիտենական ընդ
ամենայն սուրբս: Իսկ որք 'ի զօրաց
անտի հաւատացեալքն 'ի տեղւոջ
անդ՝ առեալ զմարմին երանելւոյն
պատեցին մաքուր զգեստիւք: Եւ
պատմեցաւ այս յականջս թագա-
ւորին. և առաքեալ գահիճս կո-
տորեաց 'ի նոցանէ արս չորեքտա-
սան որք էին յազգէ անտի Պարսից,
և հրամայեաց գազանաց արկանել
զմարմինս նոցա. յորս ոչ մերձեցան
ըստ անսչութեան Աստուծոյ. ա-
պա խորհուրդ առեալ հրով այրել

զմարմինս վկայիցն Քրիստոսի · վասն զի բազումք 'ի Պարսկացն յաղագս սքանչելեացն հաւատացին 'ի տէր :

Եւ մինչ յայսմ խորհրդեան էր եհաս 'ի լսելիս ամպարշտին շը֊շուկ երկեւղի գալստեանն Յուլիա֊նոսի , և մոռանայր զչարութեան խորհուրդ որ յաղագս սրբոյն · և հանդերձեալ պատրաստէր զզօրսն ելանել ընդդէմ նորա 'ի պատե֊րազմ : Յայնժամ եկեալ ոմանք 'ի հաւատացելոցն 'ի գիշերի , և ա֊ռեալ զմարմին սրբոյն Սարգսի և զորդւոյ նորա և զերկոտասան զօ֊րականացն պահեցին զգուշու֊թեամբ 'ի պատուական տեղւոջ :

Կատարեցաւ սուրբն Սարգիս և որք ընդ նմա յամսեանն յունուա֊րի 'ի կատարման աւուր երեսուն և մի , 'ի թագաւորութեանն Պարսից Շապհոյ , և Հոռոմայեցւոց Յու֊լիանոսի : Իսկ 'ի մեզ թագաւորե֊լոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիս֊տոսի · ընդ որում Հօր միանգամայն և Հոգւոյն սրբոյ փառք իշխանու֊թիւն և պատիւ այժմ և յաւիտե֊նից յաւիտեանս · ամէն :

Թարգմանեցաւ Ճառս յասորւոցն 'ի մերս 'ի ձեռն Միխայէլի ուրումն կրօնաւորի քահանայի ասորւոյ, և յարմարեցաւ ըստ կարի մերում լեզուի շարադրութեամբ 'ի Ներսիսէ եպիսկոպոսէ յեղբօրէ կաթողիկոսի Հայոց Գրիգորիսի, 'ի Թուաբերութեանս Հայոց ՈԻ. և մաղթեմք զընթերցողսդ և զգաղափարողսդ յիշել զաշխատաւորս 'ի սմա աղօթիւք առաջի Աստուծոյ յաւուր տօնի երանելւոյն. և զբանսդ յիշատակի գրել յուրաքանչիւր գըրեալսդ հայցեմք. ամէն։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԱՄԱՍԻԱ ՔԱՂԱՔԻ

## ԵՒ ՑԱՂԱԳՍ

# ՄՆՆԴԵԱՆ ԵՒ ՎԱՐՈՒՑ

# ՍՐԲՈՑՆ ԹԷՈԴՈՐՈՍԻ

## ԶՕՐԱՎԱՐԻՆ



Ի ԺԱՄԱՆԱԿԻՆ յորում Մակեդոնացին Աղեքսանդր Փիլիպպեան կոչեցեալ բազմաբիւրովք 16 անաստուածութեան տիեզերակալեացն, Ամասիա 17 ումն եղբայր Նեկտանեբեայ հօր Աղեքսանդրի հաստուածեալ 18 յԵգիպտոսէ, եւ ՚ի Մէջերկրեայ ՚ի 19 կողմն գամրական Պոնտոսի առ երկրորդն կոչեցեալ Հայովք, առ որովք հոսի 20 Գայլն գետ ընդ մէջ քարանձաւացլերանց

անցանելով յանդգնաւորոյնս 21 , և այնպէս իջանէ 'ի Պոնտոս Պողեմո_ նական ընդ Թեմիսկիւրեան դաշտ 22 յանտառախիտ ծովեզերին որ առ գետեզերբն , ժամանէ 'ի տեղին որ կոչի Մարմառիգոն 23 , սկիզբն ա_ ռեալ 'ի Պոնտոսէ 24 'ի քարալե_ րանց : Դադարեալ աղդ 25 առնե_ լով Աղեքսանդրի , հրաման ընդունի բնակել 'ի նմին տեղւոջ , զոր քաղաք շինեալ իւրովք ծառայիւք և ժողո_ վրդովք բնակէր 26 , յիւր անուն կոչեցեալ Ամասիա :

Իսկ յետ բազում ժամանակաց Միհրդատ քեռայր Տիգրանայ Հայոց արքայի , կողմնապետ գոլով աներոյ իւրոյ 'ի Միժակ քաղաքի որ այժմ կոչի Կեսարիա , զայս ու_ նի զԱմասիա . 'ի Հայս գրաւեալ տիեզերասահմանակալ քաղաք յար_ դարեաց , ընդարձակագոյնս պարըս_ պեաց առ կատարով լերանցն յեր_ կոցունց կողմանց գետոյն . շինեալ և զարքունիսն ըստ հիւսիսոյ 27 կող_ ման գետոյն առ ստորոտով քարա_ լեռնականին 28 . և նախ տապառա_

ժիւք մեծամեծ 29 հաստատմամբք կան_
գնեալ վիմօք, և 'ի վերայ զարքու_
նիան կանգնեալ 30 և յարեգակնայ_
լին գիմի անձաւին շիրիմս քարա_
կոփս 31 և Ճանապարհս սանդխա_
ձեւս և տունս քարայրս գանձուց
կռածոյս 32 յօրինեալս համանման
ձեռակերտացն Համիրամայ որ 'ի
Վան և 'ի Խաղնաթկեփայս 33 : Զորս
լցեալ գանձիւք տիրեաց ոչ սակաւ
ամս 34 մինչեւ 'ի գալն Պոմպէի.
ընդ որում մարտուցեալ և պար_
տեալ Միհրդատայ և անկեալ 'ի
Պոնտոս մեռանի 'ի Սինոպ : Իսկ
Պոմպէի առեալ զգանձն յԱմա_
սիայէ և զյոլովս 'ի բնակչաց փո_
խեալ շինէ քաղաք յիւր անուն կո_
չելով Պոմպէոպոլիս : Բայց և զԱ_
մասիա կալեալ'ի նախագահութեան
Եղեսպոնտոսի 35 մետրապոլիս ա_
րարեալ, որ լի էր ամենայն չարեօք 36
և պաշտամամբք սատանայի, մինչեւ
'ի կենարար 37 քարոզութիւն ա_
ռաքելոցն յորում բազումք հաւա_
տացին 'ի տէր :

Յորժամ եհաս սուրբ առա_

քեալն Անդրէաս յԱմասիա, և ընդ Փիդիմոս 38 ձեռնադրեալ եպիսկոպոս փոխանակ իւր Թողու անդրը, և ինքն իջանէ 'ի Սինոպ, ուր բազում սքանչելագործութիւնք արարեալ պատմին : Եւ Փիդիմոս ձեռնադրէ զերանելին Գրիգոր սքանչելագործ եպիսկոպոս Նիոկեսարիոյ. և այնպիսի ինչ կարգօք վարեցան երբեմն յայտնի և երբեմն ծածուկ մինչեւ 'ի ժամանակս հալածանաց, յորում բազումք վկայեցին. և այլ բազմութիւն հաւատացելոց սարսեալ զօղեցին 39 անյայտաբար ունելով զչօժարական հաւատսն, զոր ոչ կարէին գիտել դատաւորքն 40. այլ և զոր գիտէին չգիտացեալս առնէին. քանզի հրաման ընկալեալ էին 'ի Թագաւորէն մի խուզել 41 զայնոսիկ որք Թաքնաբար ունէին 42 զհաւատսն, այլ միայն զայնոսիկ խոշտանգել որք քաջասիրտք համարձակութեամբ մարտուցեալ 43, և յայտնի արհամարհեն զհրամանս Թագաւորացն և զպաշտամունս դիցն :

Ընդ այն ժամանակս երանելին Թէոդորոս ծնեալ լինի 'ի քրիստոնեայ ծնողաց 'ի գեղջն Սաբուէ 44, որ վեց մղոնաւ աւելի կամ պակաս հեռի էր 'ի Վէռիս քաղաքէ երկրորդ 45 Հայոց. և որպէս ասեն յաւանդական գիրս պատմութեանց թէ մօրն վախճանեալ տղայ զնա թողու և հայրն սնուցանէր զնա 46. և նորա խարշեալ հատ և հատաջրովն սնուցանէր 47 զնա. և յարբունս հասեալ սքանչելի վարուց մանկութեանն՝ սուրբ և պարկեշտ ամենայնի 48. որ զնոյն հատ սիրեալ ոչ ինչ աւելի քան զայն ճաշակէր. և այնպէս հասանէր 'ի տիս 49 հասակի երիտասարդութեան՝ կատարեալ մօրուօք խորագունիւք, կարճ հերովք գանգրիւք թուխ 50 գունով. ահաւոր տեսլեամբ, հաչակեալ արութեամբ: Զօր տեսեալ 51 զարմանալի և բազում ուժով կամեցան զինուորեցուցանել 'ի զուռն արքունի. այլ նա ոչ առնոյր յանձն ասելով. Ես երկնաւորին եմ զինուորեալ տեառն իմոյ Յիսուսի

Քրիստոսի Աստուածոյն աստուածոց : Զոր ետես ընդ արհամարհէ համարեալ 'ի բաց թողեալ սաստացին իւրովք դալ յուզղութիւն, գիտելով զյանկարծակի պնդութեանն ընդդիմութիւն 'ի համառակութիւն բերելով 52, և զհամառակութիւնն 'ի միտս իւրեանց :

Ընդ այն ժամանակս լինէր երանելին Թէոդորոս ընդ պառաստին Եւսեբեայ ուրումն կնոջ այրւոյ անցանել առ 'ի պէտս ինչ 53 գործոյ · և յուժգին 54 եղեալ տօթոյն, խորհեցաւ հանգչել 'ի մարգաձակին պառաստին Եւսեբեայ որ կոչէր Եւխայիտայ 55 . և կապեալ զձին կողմնեցաւ 56 ընդ հովանեաւ անկոցն : Զայն տեսեալ Եւսեբեայ 'ի սրահէ անկեան իւրոյ 57, կարկառեալ ըղձեռն աղաղակեաց և ասէ · Ա՜յ հեծեալ, ո՜յ հեծեալ, մի դադարիր յայդմ տեղւոջ, զի հուպ է որջ վիշապի հզօրի 58, և զայսու ժամու ելանէ և շրջի 'ի մարգաձակիդ · դուցէ միասախ 59 դու կամ երիվարդ, այլ յարուցեալ եկ 'ի

անիկս իմ, որպէս զի լուացեալ զոտս քո և հաց ճաշակեալ հանգիսցես 'ի միջօրէի, և հովուն անկանելոյ 60 երթիցես զճանապարհս քո: Պատասխանի ետ երանելին Թէոդորոս և ասէ. Ես յուսալով յօգնականութիւնն Աստուծոյն իմոյ՝ յաներեւոյթ վիշապէն ոչ երկնչիմ, թող թէ յերեւելի օձէն. Ելցէ ըստ բանի քում և սատակեսցի զնա անուամբն Քրիստոսի: Իսկ բարեպաշտն Եւսեբի իբրեւ լուաւ թէ զՔրիստոս անուանեաց, և իմացեալ եթէ հաւատակից իւր է, 'ի խնդութենէն իւրմէ 61 ընթացեալ ընդ առաջ նորա, և բուռն հարեալ աղաչէր գնալ անտի, և երթալ ընդ նմա 'ի տունն իւր 62: Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ եղեւ յանկարծակի շարժումն մեծ յոյժ և շաչիւն գալոյ վիշապին 63. զոր փութանակի զգացեալ երանելւոյն Եւսեբեայ ձիչ բարձեալ 64 մեծաձայն, և վիշապն քաջալանջ և մեծապարանոց ելեալ 65 յարձակեցաւ 'ի վերայ երիվարին ահագին

և անզգամ շնչմամբ յոյժ ։ Յայն-
ժամ երանելին Թէոդորոսի կըն-
քեալ զինքն նշանաւ ամենայաղթ
խաչին 66 Քրիստոսի հարկանէր 67
նիզակաւն զգլուխ վիշապին և շեշ-
տակի ձեղքեաց և առժամայն սա-
տակեաց զնա . որոյ տապալեալ 68
յեզերգանն որ հուպ 'ի ջուրն՝ իբ-
րեւ զգերան անարի յոյժ ահագին
տեսողացն երեւէր ։ Յայնժամ եղեւ
ծանօթութիւն և սէր բարեպաշտին
Եւսեբեայ առ երանելին Թէոդո-
րոս 69 որպէս առ յիւրմէ ծնեալ
որդի ։ Բայց երանելին Թէոդորոս
ոչ դադարէր 'ի զօրացուցանելոյ
զհաւատացեալս իւր զհեծեալս , և
ուսուցանէր վասն անուան սեառն
Յիսուսի Քրիստոսի , զի յայտնի որ-
պէս զնայն ընկալցին 70 զհաւատսն
'ի միտս հաստատունս՝ անպարտելի
մնալ 'ի հակառակորդացն 'ի յոյսն
բարեպաշտութեան , 'ի Քրիստոս
Յիսուս 'ի տէր մեր . որում փառք
յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

Այս 71 է պատմութիւն և սկիզբն

շինութեան Ամասիայ քաղաքիս, և սրբոյն Թէոդորոսի. բայց զնահատակութիւնն 'ի Յայսմաւուրքն գիտ և կարդա: Ի Թագաւորութեան Հայոց գրեալ Ճառընտիր գտեալ՝ օրինակեցաք զպատմութիւնս զայս:

Մաքսիմիանոս և Մաքսիմիոս 72 Թագաւորք առաքեցին 'ի հնազանդեալս իշխանութեան իւրեանց և ասեն. Ամենայն քրիստոնեայ որ Ճաշակեսցէ 'ի զոհից՝ կեցուսցէք, և որ ոչ կամիցի զոհել կամ Ճաշակել, չարաչար դատաստանօք դատեցարուք: Եւ 'ի ժամանակին յայնմիկ ըմբռնեցաւ Թէոդորոս յաշխարհէն արեւելից ընդ այլս բազումս, և անուն գեղջն նորա Սաքուէ. և եկն 'ի գունդն կոչեցեալ Մարացւոց. և յիշխանութեան սեննեկապետին 73 Բերենիկեայ էր քաղաք մի, զի անուն էր նորա Ամասիա մօտ 'ի Պոնտոս քաղաք, և գունդն նստէր յԱմասիա: Եւ ածին զերանելին Թէոդորոս և ստիպէին զոհել պիղծ

կռոցն ։ Իսկ նա երբեւ հաւատարիմ ծառայ Աստուծոյ լցեալ Հոգւով սրբով կայր 'ի մէջ բազմութեանն, և ասէր. Ես քրիստոնեայ եմ, և զոհել պղծոց ոչ հաւանիմ։ Բորինկաս սենեկապետ ասէ. Ազգէն զինուորութեան քո և զամենայն զօրս իմ, և հանդերձ բազում պատուով երթ և զոհեա աստուածոյն մերոյ, և առնիս սիրելի թագաւորին ։ Թէոդորոս ասէ. Զօրական եմ ես իմում թագաւորին տեառն Յիսուսի Քրիստոսի, և այլում զօրական ոչ կարեմ լինել ։ Բերենիկէս սենեկապետ ասէ. Եւ սոքա ամենեքեան որ կան աստ քրիստոնեայք են և զինուորեալ ։ Պատասխանեալ երանելւոյն Թէոդորոսի և ասէ. Իւրաքանչիւր ոք գիտէ, որպէս և կամի զինուորի. ես զիմն գիտեմ ում զինուորեալն եմ թագաւորին անմահի, և այլում զինուորել ոչ կամիմ, բայց միայն Աստուծոյ մերոյ երկնաւորի, և որդւոյ նորա տեառն և փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի ։ Պոսիգոնիոս

դուկենարիոս ասէ . Եւ Աստուածն քո որդի՞ ունի ։ Թէոդորոս ասաց . Այո ունի զբանն ճշմարտութեան , որով զամենայն ինչ արար ։ Պոսիդոնիոս զառաջաւոր ասէ . Մեք կարեմք ճանաչել զնա ։ Թէոդորոս ասէ . Մարդասէրն Աստուած ետ մեզ իմաստութիւն զի ծանիցուք զնա . երանի՜ թէ և ձեզ տայր զայնպիսի իմաստութիւն ճանաչել զնա , զի մեծ օգուտ էր ձեզ ։ Պոսիդոնիոս և Բերենիկէս ասացին . Եթէ դառնամք առ նա , չեմք բաւական թողուլ զթագաւորն մեր և հաւատալ 'ի նա ։ Թէոդորոս ասաց . Ոչինչ կարէ ոք խափանել զձեզ 'ի թողուլ զխաւար և դիմել առ լոյս , և զառժամանակեան համարձակութիւնդ որ առ մանկանացու թագաւորն ձեր՝ 'ի բաց ընկենուլ և դառնալ յԱստուած կենդանի և անսպառ համարձակութեամբ ճանաչել ձեզ ըզթագաւորն անմահ , և զինուորել նմա յաւիտեան որպէս և ասեսդ ։ Բերենիկիա սեննեկապետ ասէ . Ադէ տեսցուք այսպէս առնել . առ

ցուք նմա Թողութիւն սակաւ, ա-ւուրս, որպէս զի խրատեսցէ նա զինքն և զայլս և իւրովին եկեսցէ յօգտակարութիւն իւր. այլ և զայս կասկածեմ, գուցէ և վաղիւ ոք ըզ-մեզ նախատիցէ: Բայց աղէ տես-ցուք և վասն այլոց բազմաց որ են 'ի նոյն կրօնս:

Եւ առեալ նորա զնշխարսն, այ-նուհետեւ առեալ զհասարակակիցսն իւր խրատէր: Մոլեալ անօրինացն ըմբռնեալ ածին 'ի միասին, և նոքա մերձենային առ սուրբն Թէոդորոս, և կարդային զնա վարդապետ. իսկ նա զհետ դայր և մեծաձայն աղա-ղակեալ ուսուցանէր նոցա զճանա-պարհն փրկութեան և համբերու-թեան, որպէս զի մի ուրասցին ըզ-Թագաւորն Քրիստոս: Իսկ սուրբ նահատակացն արգելեալ 'ի բանդին վասն անուանն Քրիստոսի. և ե-րանելւոյն Թէոդորոսի գտեալ ժա-մանակ բարի և պարապորդ վասն տաճարին հայրենի, ուր կային աս-տուածք նոցա, երթեալ 'ի գիշերի հրձիգ արար: Եւ տեսեալ ոմանց

մինչ դեռ այրէր, և աճապարեալ կալան զնա։ Եւ իգլիս 74 քաղաքապետ երկուցեալ 'ի վերայ իւրացն, ամբաստան եղեալ հանդերձ զինուորօքն, ասեն ցնա. Ա՜յ չարամահ չարագուԹ և անողորմն, զքաղաքս ձաղ 75 արարեր, զտաճարն հայրենի այրեցեր, և զաստուածսն մեր Թշնամանեցեր։

Եւ առեալ զերանելւյն ածին առ դատաւորն Պոպլիոս սարատոնացի, ուսուցանելով այսպէս. Այրս այս նորեկ 76 'ի քաղաքիս մեծ ոճիրս գործեաց, զտաճար մօր աստուածոցն հրձիգ արար, և Թշնամանեաց զաստուածսն մեր. իսկ իմ ըմբռնեալ զդա ածի առ մեծ իշխանուԹիւնդ, որպէս զի ընդ յանդուգն գործոյն պատուհասի արժանի արասցես, զի ամենայն ոք գիտասցէ Թէ չար մահու արժանի է դա։ Դատաւորին կոչեալ զԲերենիկաս սենեկապետն ասէ ցնա. Դու ետուր դմա ժամանակ ԹողուԹեան. զի յօժարեսցի և հրկէզ արասցէ զտաճար աստուածոցն մերոց։ Բերենի-

կաս ասէ. Ես բազում անգամ ա-ղաչանօք խրատեցի զնա, զի հաւանեսցի, և վասն այնորիկ ետու նմա Թողութիւն, զի զմտաւ ածեալ զղ-ջասցէ. արդ եթէ նա արհամար-հեաց զհրամանս մեր, և քամահեաց զաստուածսն, և ընտրեաց զիւրն՝ ես զինչ առնեմ. դու այսուհետեւ զհրամայեալսն քեզ արա: Եւ դա-տաւորին նստեալ յաթոռ ատենի, հրամայեաց ածել զԹէոդորոս. և եկեալ երանելւոյն, ասէ ցնա դա-տաւորն. Ընդէ՞ր զայդ արարեր. փոխանակ երկիր պագանելոյ քո աստուածոց մերոց և խունկս անու-շունս մատուցանելոյ, հրկէզ արա-րեր: Թէոդորոս ասէ. Զոր արարի ոչ ուրանամ, փայտ մատուցի յաս-տուածն ձեր, և իբրեւ հուր եղեւ փայտն, և վառեցաւ զնմանէ. և ձեր աստուածուհին այնպիսի էր որ հուր մերձենայր 'ի նա. դիտասջիք զի 'ի հուր գեհեննին մտանելոց էն աս-տուածքն ձեր, և ընդ նոսին կորըն-չելոց էք հոգւով և մարմնով յան-շէջ կիզմանն յաւիտեան:

Եւ դատաւորն հրամայեաց արկանել զնա ՚ի տախտապար, և գանել յոյժ, և ասէ ցնա հեզ բանիւք իւրովք. Եւ այլոց եւս քաջալերէիր դու և համարձակութեամբ առնէիր. այսուհետև չար դատաստանօք դատեցայց զքեզ, և տաց քեզ թագաւորական հրամանաց ծառայել: Թէոդորոս ասէ. Ոչ այդու բանիւք հաւանեցուցանես դու զիս, և ոչ ՚ի տանջանաց զանգիտեմ ես. և եթէ այլ եւս ահիւ դատաստանս ածես ՚ի վերայ իմ՝ չերկնչիմ, զի յոյս ապաստանի առ Աստուած եդեալ եմ, որ տայ ինձ համբերութիւն, և փրկէ զիս ՚ի քոյին խաբէութենէդ: Դատաւորն ասէ. Ջոհեա, և երթ փրկեա ՚ի տանջանացդ: Թէոդորոս ասէ. Ոչ են տանջանքս այս յաւիտեան. քանզի տէրն իմ և Թագաւորն Յիսուս Քրիստոս առաջի աչաց իմոց է, և փրկէ զիս ՚ի տանջանաց քոց զոր մատուցանես. և դու զնա ոչ տեսանես, զի կոյր ես, և ոչ տեսանես զանձին քո չար: Զայս իբրև լուաւ

դատաւորն բարկացաւ յոյժ , և մանչեաց իբրև զառիւծ , և հրամայեաց արկանել զնա 'ի բանդ , և կնքեալ զդուրս բանդին , զի 'ի սովու և 'ի ծարաւու մեռցի ։ Իսկ երանելին Թէոդորոս կերակրէր 'ի Հոգւոյն սրբոյ . և 'ի գիշերին յայնմիկ երեւեցաւ տէրն մեր Յիսուս. Քրիստոս և ասէ ցնա . Թէոդորոս քաջալերեաց , զի ես ընդ քեզ եմ, և մի առնուր կերակուր ինչ 'ի մարդկանէ . զի քեզ պատրաստեալ են կեանք երկնաւորք . և զայս ասցեալ փրկչին վերացաւ 'ի նմանէ . և 'ի գնալն առաւն սուրբն Թէոդորոս սկսաւ սաղմոսել և ասել ուրախուԹեամբ զսաղմոսն , և էին բազմուԹիւն որ կցորդէին 77 սաղմոսին ։ Իբրև լուաւ զայս բանդապետն , յարեաւ ընԹացաւ 'ի դուրս բանդին , և ետես զդուրսն փակեալ և կնքեալ , և յեռաւ ընդ պատուհանն , և ետես զի բազումք էին ընդ նմա սպիտակազգեստք 78 , և սաղմոսէին ընդ երանելւոյն Թէոդորոսի . և յերկեւղէն գնաց և պատ-

մնաց դատաւորին ։ Եւ յարուցեալ գայր դատաւորն 'ի դուրս բանդին, և ետես զդուրսն փակեալ և կըն-քեալ, և զձայն սաղմոսին՝ լսելի լինէր հանդերձ երանելեան Թէոդորոսիւ ։ Եւ հրամայեաց զօրականացն շուրջ զբանտիւն պատել. և կային կազմ զինու, կարծելով եթէ քրիստոնեայք իցեն ընդ Թէոդորոսի. և իբրեւ բացին նոքա զդուրս բանտին, ոչ զոք գտին, բայց միայն զծառայն Աստուծոյ զԹէոդորոս պնդեալ 'ի կոճեղս. և անկաւ ահ մեծ 'ի վերայ դատաւորին և որ ընդ նմայն էին ։ Եւ հրամայեաց դատաւորն տալ նմա զութերորդ մասն նկանակին, և զութերորդ բաժին ջրոյ դորակի միոջ ։ Իսկ երանելին նահատակն Աստուծոյ ըստ գրեցելումն որ ասէ, եթէ Արդարն 'ի հաւատոց կեցցէ, ոչինչ կամեցաւ առնուլ կերակուր ինչ 'ի նոցանէ, այլ պատասխանեալ ասէ ցնոսա. Զիս կերակրէ տէրն իմ և Թագաւորն, բարերարն և ողորմածն ։

Եւ իբրեւ առաւօտ եղեւ հրա-

մայեաց դատաւորն ածել զսուրբն , և ասէ ցնա . Թէոդորէ , հաւանեա ինձ , և զոհեա աստուածոցն առանց չարչարանաց . երդուեալ ամենայն աստուածովքն , զի Թագաւորացն գրով հաստատեմ զքեզ տէր աշխարհիս , և քահանայապետ աստուածոցն , և աԹոռակից տէրուԹեան իմոյ , և մեծամեծ պարգևս ընկալցիս յինէն ։ Իսկ երանելին համբարձ զաչս իւր յերկինս , կընքեաց զինքն և ասէ ցբռնաւորն . Մարմնոյս ունիս իշխանութիւն , եԹէ 'ի հուր արկանես , եԹէ գազանաց մատնես , և եԹէ այլ բազմազան տանջանօք վատնես 79 զմարմինս իմ , մինչեւ է շունչ յանդամս իմ , ոչ ուրանամ զանուն տեառն Աստուծոյ իմոյ Յիսուսի Քրիստոսի ։

Յայնժամ 'ի խորհուրդ կոչեաց դատաւորն զԲերենիկաս սենեկապետ , և ասէ ցնա . Զի՞նչ արասցուք զայրս զայս . և հրամայեաց կախել զնա գլխիվայր , և հարկանել փշալից գաւազանօք , և հարին զնա մինչեւ քանցեցան մարմինք նո-

րա . և ակնարկեաց դահճացն քե֊
րել զնա . և այնչափ քանցեցին
զնա , մինչև մերկացելոց կողիցն
մարմինքն անկանէր յերկիր . և
լեարդն Թոքովն հանդերձ երևէր
արտաքս ։ Իսկ երանելին Թէոդորոս
ոչ ինչ տայր պատասխանի , այլ յա֊
ղօթս կայր , և ասէր . Օրհնեցից ըզ֊
քեզ տէր յամենայն ժամ , հանա֊
պազ օրհնութիւն քո 'ի բերանի ի֊
մում ։ Իսկ դատաւորն իբրև լսէր
զայս , կայր զարմացեալ ընդ հա֊
մարձակութիւն 80 սրբոյն ։ Եւ ասէ
ցնահատակն երանելի . Ո՞չ ամաչես ,
ա՜յ տառապեալ քան զամենայն մար֊
դիկ . զի 'ի մարդ ունիս զյոյս քո և
մանաւանդ 'ի բանամահիկ . այնպէս
անբան ես մինչև այդպիսի տանջա֊
նաց զքեզ մատնեցեր ։ Իսկ երանե֊
լի նահատակն Թէոդորոս ասէ ցնո֊
սա . Այս ամօթս ինձ եղիցի , և ա֊
մենայն մարդոյ որ երկնչի յԱստու֊
ծոյ , և կարդայ զանուն տեառն Յի֊
սուսի Քրիստոսի ։

Եւ ամբոխն 'ի հեռաստանէ կա֊
ցեալ աղաղակէր վաղվաղակի կորու֊

սանել զնա ։ Եւ դատաւորն դարձեալ յղեաց զկնի զԿիւրղիկոն դահիճ և ասէ ․ Ասա Նմա զոհեա ․ և երթ թափեաց՝ի տանջանացդ յայդցանէ ։ Իսկ սուրբ վկայն Ճշմարիտ՝ համարձակեալ Քրիստոսիւ ասէ ցդատաւորն ․ Ա՜յ ամպարիշտ և ապերատ , լի ամենայն անիրաւութեամբ և թշուառութեամբ , որդի սատանայի , ժառանգ դժոխոց , և գրաւական գեհենին , մինչեւ յե՞րբ ոչ երկնչիս յԱստուծոյ շնորհողէն քեզ զայդպիսի իշխանութիւնդ ․ մի՛ ամաչես , այնքան յիմար ես և ոչ իմանաս թէ թագաւորք Աստուծով ունին զթագաւորութիւնս , և դատաւորք զտէրութիւն ։ Եւ դու զիս բռնադատես թողուլ զԱստուած կենդանի ․ և երկիր պագանել անշունչ պատկերաց ։ Յայնժամ դատաւորն ասէ ցսուրբ վկայն Թէոդորոս ․ Զի՞նչ կամիս , այսուհետեւ ընդ մեզ լինել թէ ընդ Քրիստոսին քում ։ Իսկ սուրբ վկայն պատասխանի ետ ուրախութեամբ և ասէ ․ Ես ընդ Քրիստոսին իմում էի , և եմ , և եղէց յաւիտեան ։

Յայնժամ տեսեալ բռնաւորին եթէ ոչ ինչ կարէ օգնել նմա դատաստանաւն և տանջանօքն, իբրև ետես զհամարձակութիւն նորա, ետ հրաման վճիռ վասն նորա այսպէս. Թէոդորոս ոչ հաւանեալ բարեյաղթ թագաւորաց և աստուածոցն, այլ հաւանեալ Յիսուսի Քրիստոսի 'ի պահել զաւանդ նորա, որ խաչեցաւ առ պոնտացւով Պիղատոսիւ, որպէս լուայ, զսա հրամայեմ հրկէզ առնել, որում և արժանի իսկ է։ Եւ սպասաւորացն վաղվաղակի պատրաստեալ զհուրն 'ի փայտից որ 'ի պէտս բաղանեաց և կամ այլ ինչ իրի, լցին զպէտս իւրեանց։ Յայնժամ հրամայեաց դատաւորն զփայտիւ արկանել և տանել 'ի հուրն. և ածին զերանելին ուր հրամայեցաւ, և կամէին հանել 'ի նմանէ մերկանալով զպարեգօտս նորա և լուծանել զգօտի նորա. զայս առնէին զի փորձէին զնա. իսկ երանելին փութայր ինքն զինքն արկանել 'ի հուրն։ Իսկ յորժամ հուրն պատրաստեցաւ, 'ի բաց եդեալ ըզ-

հանդերձն իւր, և լուծեալ զգօտին, կամէր և զօգ ոտիցն հանել. զի յառաջագոյն զայս չէր արարեալ։ Եւ ընթանային իւրաքանչիւր ոք 'ի հաւատացելոցն փութալով մերձենալ 'ի քրտունս նորա. և վաղվաղակի պատրաստեցին առ հուրն զգործարանն, և կապեցին և կամէին հեղուսել ընդ փայտ մի և ընկենուլ 'ի հուրն, և ասէ նա ցդահիճսն. Թոյլ տուք ինձ, զի որ ետ ինձ համբերութիւն, նոյն ինքն կարող է և առանց աշխատութեան պահել զիս. յայնժամ ոչ բեւեռեցին զնա, այլ միայն կապեցին։ Իսկ երանելին տեառնագրեաց զինքն 'ի Հոգին սուրբ. և գային ածէին զնա իբրև զգառն 'ի պատարագ, և իբրև ըղջոյ յողջակէզս։ Համբարձ զաչս իւր յերկինս և ասէ. Տէր Աստուած ամենակալ, որ սիրելոյն քո և օրհնելոյն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հայրդ ես, որով զքո գիտութիւնդ ընկալաք, որ կոչեցեր զիս 'ի զօրութիւնդ քո, Աստուած զօրութեանց, և ստեղծիչ ամենայն արա-

րածոց և ամենայն կենդանեաց որ կան առաջի քո, օրհնեմ զքեզ՝ որ արժանի արարեր զիս այսօր խառնել 'ի գունդս սուրբ վկայից քոց, և կցորդ բաժակի տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, և հաւատալ 'ի յարութիւն և 'ի կեանսն յաւիտենից շնչով և մարմնով անապականութեամբ Հոգւոյն սրբոյ: Ընդ ահա եկեալ եմ իբրև զոչխար 'ի սպանդ, զի ընկալեալ եղէց առաջի քո այսօր պատարագ պարարտ և ընդունելի, որպէս պատրաստեցեր յառաջագոյն և կատարեցեր ա՛նսուտ և Ճշմարիտ Աստուած. վասն այսորիկ օրհնեցից զքեզ և փառաւորեցից 'ի ձեռն քահանայապետին մերոյ Յիսուսի Քրիստոսի սիրելի որդւոյ քո: Տուր ինձ զօրութիւն և իմաստութիւն, և շնորհեա կատարել զընթացս իմ քրիստոնէութեամբ, և առնուլ զնշան յաղթութեան քո: Պարգևեա տէր և որք ընդ իս ըմբռնեցան 'ի Տիւրոնէ՝ զի և նոքա Ճշմարիտ հաւատով 'ի խոստովանութեան անուան քո կատա-

րեալ յաղթեսցեն հակառակամար-տին, և ընկալցին 'ի քէն զանթա-ռամ պսակն :

Ես համբարձեալ զաչս իմ 'ի բարձրութիւնն և տեսի անդ զԿալլի-նիկէ, որ և զնա և զսա 'ի միասին ածեալ էր 'ի Տիւրոսէն, աղաղա-կեաց և ասէ. Կալլինիկէ, քեզ մնամ փութա հասանել ինձ. քանզի որ յաղթականելքն 81 աշխարհէս ոչ թո-ղաք զմիմեանս, այնպէս և 'ի կեանսն յաւիտենից մի թողցուք զմիմեանս. և կատարեալ զբանն, սկսաւ դար-ձեալ աղօթել այսպէս. Տէր Յի-սուս Քրիստոս, որ միջնորդ ես Աստուծոյ և մարդկան, որ արժանի արարեր զիս զաստուածեալս յաղ-թել բանսարկուիս այսորիկ, և կա-տարել զհանդէսս զայս խոստովա-նութեանս անուան ամենասուրբ Երրորդութեանդ. գոհանամ զքէն առ իմ Յիսուս Քրիստոս, և առա-ւել գոհանամ և այժմս և յան-սպառ յաւիտեանսն : Ընկալ առ զհոգի իմ խաղաղութեամբ, զի փա-ռաւորեսցի յիս սուրբ անունդ Հօր

և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ, յիս տառապեալս որ գամ 'ի քէն զանսպառ ողորմութիւն քո, և առաւելեալ եմ 'ի շնորհաց քոց պարգևաւ:

Եւ կատարեալ զաղօթսն առաւել բորբոքեցին զհուրն. և վառեալ հնոցին ելանէր բոցն մինչև յերկինս: Եւ իբրև եմուտ 'ի հուրն, զարմանս մեծամեծս տեսաք, որոց տուեալ էր տեսանել 'ի հոգւոյն սրբոյ. զի հուրն կամարաձև եղեալ իբրև զխորան եկաց 'ի վերայ սրբոյն. և իբրև զառագաստ նաւի հողմուռոյց գոգ առեալ շրջապատեաց զմարմնովն նորա. և կայր երանելին 'ի մէջ հնոցին ոչ իբրև զմարմին մարդոյ այրեցեալ, այլ իբրև զհաց խորովեալ, և իբրև զվարդ անուշահոտ. և օրհնէր մեծաձայն և փառաւորէր զԱստուած 'ի մէջ հնոցին և ասէր. Փառք քեզ Հայր սուրբ, փառք քեզ Որդիդ սուրբ միածին, փառք քեզ Հոգիդ ճշմարտութեան, սուրբ Երրորդութիւնդ, մի աստուածութեանդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից: Եւ ա_

սացեալ զամէնն , զորէն փչման ար-
ձակեաց զՀոգին 'ի ձեռս Աստուծոյ.
և տեսաք զՀոգին Նորա , զի իբրեւ
զփայլական վերացաւ յերկինս :
Իսկ կին ոմն բարեպաշտօն զի ա-
նուն էր Նորա Եւսեբի մեծատուն
յոյժ , խնդրեաց զմարմին նահատա-
կին Քրիստոսի . զինեւով և իւղով
կազմեաց զսուրբ նշխարս Նորա , և
պատեաց 'ի սուրբ կտաւս , և տա-
րեալ 'ի գեւղն Եւքայիտայ և եդ 'ի
տան իւրում . զյիշատակն կատարե-
լով 'ի փառս ամենասուրբ Երրոր-
դութեանն :

Կատարեցան երկոքին սուրբ վկա-
յքն Քրիստոսի Թէոդորոս և Կա-
լինիկէ բարի խոստովանութեամբ
յանուն տեառն մերոյ Յիսուսի
Քրիստոսի , յամսեան յունիսի յեր-
կրորդում աւուր . 'ի Թագաւորու-
թեանն Մաքսիմիանոսի և Մաքսի-
մոսի . իսկ 'ի մեզ Թագաւորելոյ
տեառն մերոյ Յսի Քսի , ընդ որում
Հօր փառք , իշխանութիւն և պատիւ
Հանդերձ Հոգւովն սրբով . ամէն :

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Պարսամ կամ Պարսամոյ Ճըրգ-նող Հայրապետ Եդեսացի, որիշ է 'ի Պարսամայ ասորւոյ սամոսատացւոյ: Գտցեն զայսմանէ խըն-դրողք լիուլի աւանդեալ 'ի լիա-կատար վարս սրբոց յ'Ա. Հատ. 378:
2. Այլ օրինակ մրցանացն:
3. Հնագոյնն մարփոխչութեան:
4. Մեւս օրինակն. Հմուտ գուշակ գի-տութեան հին և նոր կրակարանաց՝ ու-ռէալ 'ի մանկութենէ:
5. Մեւս օրինակն Պառնոմափ:
6. Մեւս օրինակն փէրոկան:
7. Ցաղագս Ագապին ակնարկեն բանքս, որոյ սովորութիւն յա-ճախեալ էր առ Նախնի քրիստո-նեայս: Զորմէ տես և յ'Բ հատ. Սոփեր. 97:

8. Մեւսն՝ նորղէլ։

9. Հնագոյնն՝ մոլար ապաւթնիւն։

10. Ըստ հնոցն սովորութեան զանց առնէ ամենն յիշատակել զբըղ-խումն հոգւոյն սրբոյ և յՈր-դւոյ։

11. Հնագոյնն՝ բանակացս։

12. Մեւսն՝ բնութեամբ։

13. Մեւսն՝ փրամախոհական։

14. Մեւսն՝ բնակէալ նորին Սարգսի։

15. Հնագոյնն հայէլ։

16. Մի օր. բաղմաքիւր յոգնանա-փառածութեամբն։

17. Մի օր. յԱմսաւոյ .... երեք օր. Նեփառաեայ։

18. Երեք օր. հափառած եղեալ։

19. Երեք օր. 'ի մէջ։

20. Մի օր. առ որս հասի Իածիս. իսկ մեւսն՝ առ որս կոչի Գայլ Գետ։

21. Մի օր. ընդ մէջոյն քարանձերանց անցանէլով ընդ Լինիսս խառան. մեւսն ընդ մէջ քարանձերանց։

22. Երկու օր. մոլեկան պնդութեամբ մեռութեամբ 'ի Սկիւռւոյն դաշտ։

23. Մի օր. Մարմաւթին։

24. Մի օր. Եղենաս Պանդոսի 'ի մէջոյս քարանձերանց. մեւսն 'ի Պանդոսի։

25. Մի օր. աղգ առանլով. մեռան դադարելոլ ատփ:

26. Այդպէս երկու օր. խակ յայլ օրինակս պակասէ վերջին հատածն:

27. Մի օր. ընդ հիւսիսակողմն գետոյն:

28. Մի օր. առ սփոփոփով քաղաքէան յանկինդ և նախապատածիւք հատպապէալ....

29. Երկու օր. մեծամեծօք համաչիրս. այլ օր. հապապափոփիրք խանգնեալ վիմօք:

30. Մի օր. խոցոտյանէ:

31. Մի օր. քարաժորս:

32. Երկու օր. ճրածոյս:

33. Մի օր. Բադնաթգեքայ. ղոր:
Զայսմանէ վկայէ և Յովհ. կաթողիկոս 'ի Պատմագրութեանն իւրում այսպէս. « Այս Միհըր-
» դատ երթայ ունի եւս և զԱ-
» մասիա, որ բազում ամօք յա-
» ռաջ շինեալ էր յԱմասիայ
» յեղբօրորդւոյ Նեքտանեբայ
» հրամանաւ Աղեքսանդրի որ-
» դւոյ Նեքտանեբայ, և ընդար-

» ձակատագրյնս զնա պատրաստեաց,
» և գրաւելով զնա 'ի Հայս՝ տիե-
» զերասանաձման քաղաք զնա յար-
» դարձեալ կոչէ. չինէ 'ի նմա և
» արքունիս ըստ հիւսիւսոյ կող-
» մանէ Ուխս գետոյ. իսկ յարե-
» ւելից դիմակի քարանձաւին
» չիրիմս քարակոփս և տունս
» բրածոյս յօրինէ համանման
» ձեռակերտին Շամիրամայ որ
» 'ի Վան և 'ի Խաղնալթգեղբայ»։

34. Մի օր. փիրէջին. . երկու օր. փիրոջան. մի օր. ծամանոխ ։

35. Երկու օրին. Եղինոս Պոնտոսի. մեւան ղԶղիոս Պոնտոս Հերակղեզլիք արարէոլ ։

36. Երկու օր. խարծէօփ ։

37. Երկու օրին. նոր ։

38. Մի օրին. Փէտէմէոս. մեւան՝ Փէնէմոն. վերջինն դրեալ էր յըս-տորեւ Փիփիմոս ։

39. Երկու օրին. և Թերի օր. ղօ-ղէալ սարոնէջին ։

40. Մի օրին. Բագաոնրփն ։

41. Մի օր. 'ի տոփաոսրէն. . . մեւան՝ 'ի տոփաոսրացն ։

42. Մի օրին . և Թերլին ոանիցին :
43. Երկու օրին . և համարձակամարդք
էին կամ ընկերին . . . . զղջալյան դէց .
Թերլին՝ քաջալերեամբ արհամարհէին :
44. Մի օրին . Սաքաաքէայ . մեռան՝
Սաքոքէ : Իսկ Թերլին՝ ՚ի քաղաքին
Աստարքեսս :
45. Մի օրին . յաւելլու կոչեցեալ :
46. Մի օրին . և հայրն մեռացանելով .
իսկ մեռան՝ Բողոս զնա հօրն մեռա_
ցանել :
47. Մի օր . և հարիւն և հարազշրան :
48. Մի օր . ղարգացեալ օտանըէլի վա_
րոսք , զմանկութիւնն վարէր սուրբ
ղգաստ և պարկեշտ յամենայնի :
49. Մի օր . և Թերլին յառաջնո հա_
սանի . . . ՛. մի օրին . մօրաւօք խորա_
դիմօք :
50. Երկու օր . Բոսխ գոլով :
51. Մի օր . ղոր մնաօտն ծնեալ . իսկ
մեռան՝ ղոր փեսեալ զնա արոս :
52. Մի օր . յաւելլու ցինքեան :
53. Մի օր . յաւելլու խոր . Թերլին
ոա պէտս խորոյ :
54. Մի օր . նեղեալ . մեռան՝ եղե_
լոյ ՚ի :

70․ Մի օր․ կաղչին չհաւատան հաւատա-տան ։

71․ Մի օրինակ յաւելու ասաէն զկարճառօտ յիշատակարանս ։

72․ Երեք օր․ ասա և յստորեւ ունին Մոփսինքէս ։

73․ Թերի օր․ սէնէկապանին ։

74․ Թերի օր․ և դիցն ։

75․ Թերի օր․ ծաղր արարէր ։

76․ Թերի օր․ Նորակէրփ ։

77․ Թերի օր․ կշորդ լինէին ։

78․ Թերի օր․ սպիտակաղձէայք ։

79․ Այլ օրին․ ապականեցէս ։

80․ Թերի օր․ համբերութեան ։

81․ Այլ օր․ այպանելի ։



# ՑԱՆԿ

ԺԶ. ՀԱՏՈՐՈՑ